մեր քաղաքի բնիկներից չէր, բայց մի քանի տարի առաջ, մի սաստիկ ձմեռնային եղանակում, նա յայտնուեցաւ մեր քաղաքում, բոլորովին միայնակ, որպէս մի փախստական։ Յետոյ փոքր առ փոքր կազմուեցաւ նրա ընտանիքը։ Այդ ընտանիքը շատ մեծ չէր, — ինքը որսորդը իր միակ զաւակի Մարօի հետ — ահա բոլորը։ Դրանց թւում գտնվում էին՝ մի մշտական ծառայ Մըհէ անունով, մի տնակալուչ կին, որին կոչում էին Խաթուն եւ մի պատանի, որին կոչում էին Հասօ։ Այս վերջինը որսորդի որդեգիրն էր։ Ո՞վքեր էին դրանք եւ որտեղից եկան, — յայտնի չէր։ Միայն մեր քաղաքում որսորդի մասին խօսվում էին շատ զարմանալի պատմութիւններ, իբր թէ նա տաճկական Հայաստանի արեւելեան կողմերիցն էր, թէ նա իր հայրենիքում մի նշանաւոր մարդ է եղել, թէ նա շատ կռիւներ է ունեցել քրդերի հետ եւ իր գլխի մազերի համբարքով մարդիկ է սպաննել եւ այլն։ Որքան ստոյգ էին այդ զրոյցները, մենք չը գիտէինք, մեզ այսքանը միայն յայտնի էր, որ Ալօն մի բարի մարդ էր եւ մեր ամենալաւ դրացին, թէեւ ամենքը ատում էին նրան եւ խորշում էին նրանից, որպէս մի սարսափելի եղեռնագործից։

Ճշմարիտ է, որ Ալօն իր միշտ լուռ, միշտ տխուր եւ ծածկամիտ բնաւորութեամբ մնաց ամենի համար որպէս մի մթին հանելուկ։ Նրա ճակատի վրայ դրած խոր սպին իր ահաւորութեամբ մի առանձին արտայայտութիւն էր տալիս դէմքի խոշոր, միեւնոյն ժամանակ աւազակային գծագրութեանը, որ յարուցանում էր նայողի մէջ ակամայ երկիւղ եւ կասկած։ Այսուամենայնիւ, նա շատ բարեսիրտ մարդ էր. ես, Մարիամը եւ Մագթաղը ամենեւին չէինք վախենում նրանից։ Երբ գնում էինք նրա տունը, նա առնում էր մեզ իր երկայն եւ ահագին ծնկների վրայ, օրօրում էր

եւ “պոչը կտրած մկան„ — “քոսոտ այծի„ հէքիաթներն էր պատմում, մենք թուլանում էինք ծիծաղելուց։ Մարօն չէր կարողանում համբերել, երբ տեսնում էր, որ իր հայրը Մարիամին նոյնքան սիրում էր, որքան Մագթաղին եւ ինձ։ — “Նա էլ քո քոյրն է„ ասում էր հայրը եւ խրատում էր նրան նախանձոտ չը լինել։ Ամեն անգամ, երբ մենք գնում էինք որսորդի տունը, նա անսահման զուարճութիւն էր պարգեւում մեզ։ Ալօն տալիս էր մեզ իր որսած թռչուններից որը դեռ կենդանի էր մնացած. մենք կապում էինք նրա ոտը թելով եւ օրերով խաղ էինք անում նրա հետ։

— Փարհատ, ասաց ինձ միանգամ որսորդը, — դու շատ ես չարչարում թռչուններին, եթէ այսպէս կը վարուես, ես միւսանգամ քեզ ոչինչ չեմ տայ։

Ես, սկսեալ փոքր հասակից, խօսքի ետեւից մնացողներից չէի. իսկոյն պատասխանեցի.

— Ես խօ չեմ սպաննում, բայց դու սպաննում ես թռչուններին ու ինձ ասում, թէ ի՞նչու ես չարչարում։

— Սպաննելու եւ տանջելու մէջ մեծ զանազանութիւն կայ, ասաց նա ժպտելով. — վերջինը աւելի վատ է։

Ամեն անգամ, երբ մեր թաղի մէջ ձայն էր տարածվում, թէ Ալօի ծուղակի մէջ գայլ, արջ, կամ մի ուրիշ գազան է ընկել, ամբողջ թաղը թափվում էր այնտեղ տեսնելու։ Նա իր ծուղակը կազմել էր քաղաքից դուրս, որ շատ հեռու չէր մեր բնակարանից։ Դա մի բոլորակ վերապ էր, բաւական ճարտարութեամբ գետնի մէջ փորած, եւ քառն արշինի չափ խորութիւն, հինգ արշինի չափ լայնութիւն ունէր։ Երեւակայեցէք ձեզ մի սամօվար, որի ջուր լցնելու տեղը դատարկ է, իսկ կրակ լցնելու տեղը ամբողջ է. — վիրապը մի այսպիսի ձեւ ունէր։ Վիրապի մէջտեղում, ուր մի հաստ սիւնի նման պինդ

գետին էր բարձրանում, նրա վրայ ամեն գիշեր դրվում էր մի գէշ, իսկ սիւնի չորս կողմի դատարկութիւնը ծածկվում էր եղէգներով, այնքան թոյլ կերպով, որ եթէ մի հաւ անցնելու լինէր ծածկոցի վրայ, իր ծանրութեամբ կարող էր իսկոյն ցած գլորուել: Գազանները գէշի հոտը առնելով, մօտենում էին նրան, բայց դեռ գէշին չը հասած, ընկնում էին վիրապի մէջ:

Վաղ-առաւօտեան յայտնվում էր որսորդը Մըհէի հետ: Բազմութիւնը հետաքրքրութեամբ սպասում էր, թէ ինչպէս պէտք է դուրս բերեն գազանին. որը կատաղած, զայրացած, եւ անհանգիստ կերպով պտըտվում էր վի-րապի մէջ, մռնչում էր, զարհուրելի ձայներ էր արձակում եւ փորձեր էր փորձում դուրս գալ, բայց չէր կարողանում: Այդ միջոցին վիթխարի Մըհէն, աջ ձեռքում մի ահագին երկաթէ մահակ բռնած, իսկ ձախ ձեռքում բռնելով շղթաներով ամրացրած Քալափչէն[1], իջնում էր վիրապի մէջ: Բազմութիւնը սարսափում էր կիսախելագար որսորդի աներկիւղութեան վրայ: Լինէր այնտեղ գայլ, արջ, վագր, ինձ, մի երկչոտ աղուէս, — մի եւ նոյն էր Մըհէի համար. նա բոլոր գազանների վրայ նայում էր, որպէս ոչխարների վրայ:

Վիրապի մէջ սկսվում էր գազանի եւ Մըհէի ստորերկրեայ կռիւը: Մենք ոչինչ չէինք տեսնում, միայն լսում էինք գազանի բարկացոտ մռնչիւնը, շղթայի ձայնը եւ երբեմն երկաթէ մահակի ծանր հարուածները: Երբ գազանը յաղթուած էր, Մըհէն մի առանձին փաղաքշական եղանակով ասում էր նրան. "Հանգստացիր, գառնուկս, ես

[1] Քալափչէ մի տեսակ երկաթից շինած գործիք է, որ անց են կացնում գազանների բերանը, նրանց զսպելու համար. այդ գործիքը մեր լեզւում կոչվում է "գայլ"։

քեզ երկար այստեղ չեմ թողնի»: Եւ իրաւ, մի քանի րոպէից յետոյ յայտնվում էր Մըհէն, իր հետ դուրս քաշելով գազանին, որի գլուխը եւ բերանը կաշկանդուած էին լինում փալաֆչէի մէջ, եւ այնքան ամուր կերպով, որ ոչ ոքին վնասել չէր կարող:

Խիստ սակաւ անգամ էր պատահում, որ Մըհէն, դուրս գար վիրապից, երեսը արիւնաթաթախ, ծուատուած, կամ մարմնի մի այլ մասը վիրաւորուած: Բայց երբէք չէր պատահում, որ նա չը կարողանար զսպել գազանին: Ես մինչեւ այսօր յիշում եմ, թէ ո՛րպիսի անհոգութեամբ այդ երկաթէ մարդը ձեռքով սրբում էր իր երեսից արիւնը, կարծես թէ, քրտինք էր սրբում:

Ալօի պարապմունքի մէջ Մըհէն օգնում էր նրան, աւելի քան նրա բոլոր որսորդական շները եւ բարակները: Նա զարմանալի ճարպկութիւններ եւ հասկացողութիւն ունէր որսորդութեան մէջ: Անասունների բնաւորութիւնը եւ նրանց սովորութիւնները նա այն աստիճան ուսումնասիրած էր, որ բաւական էր տեսնել նրանց թաթերի ձիւնի վրայ տպաւորուած հետքերը, այնուհետեւ նա գիտէր, թէ ի՛նչ անասուն էր անցել, ո՛ր տեղ կարելի էր գտնել նրան, կամ ի՛նչ հնարքով պէտք էր որսալ:

Ալօն ուրիշ պարապմունք չունէր. նա ապրում էր որսորդութիւնով միայն: Մազոտ գազանների մորթերի գործածութիւնը մահմեդականների համար պիղծ համարուելով, թուրքերը, պարսիկները եւ քրդերը նրանց որսորդութիւնով չէին պարապում, եւ այս պատճառով, ասպարէզը մնացել էր միայն Ալօին: Նրա տունը մի կատարեալ գազանանոց էր: Ամեն անգամ, ես այնտեղ գնալիս, գտնում էի նրան զբաղուած կամ գազանները կերակրելով եւ կամ աղուէսի, կուզի, գայլի, արջի, վագրի եւ այլ այստեսակ

անասունների մորթերը չորացնելով։ Հրեայ և հայ վաճառականները իրանք գալիս էին, և գնելով մորթերը, տանում էին հեռու երկիրներ վաճառելու։

Մարօն այն պատճառն ընտելացած էր գազանների հետ, որ ամենևին նրանցից չէր վախենում։ Միանգամ նա ցոյց տուեց ինձ մի ամեհի վագր ասելով.

— Տես, Փարհատ, ինչ գեղեցիկ բծեր ունի։

Ես սարսափեցայ, երբ փոքրիկ աղջիկը մօտեցաւ և սկսեց փայփայել գազանի ահագին գլուխը։

— Ի՞նչու ես վախենում, ասաց նա ծիծաղելով, — դա մի մեծ կատու է, և աւելի ոչինչ։

Այդ վագրին մանուկ հասակից որսացել էր նրա հայրը. որովհետև Մարօն շատ սիրում էր նրան, այս պատճառով պահել, մեծացրել էին։ Ինձ թւում էր, որ Մարօն էլ այն գազանների ձագերից մէկը պէտք է լինէր, որովհետև նրանցից չէր վախենում և նրանց շատ սիրում էր։



Է.

## ՄԱՆԿԱՎԱՐԺ ԵՒ ՔԱՀԱՆԱՅ

*Մայրս իմ փոքր հասակից հոգս էր տանում, որ գիր-կարդալ սովորեմ եւ “լաւ մարդ„ դառնամ։ Տասն տարեկան էի, երբ նա ինձ մեր Թաղի քահանայի մօտ տարաւ։ Այն օրը Հոգեգալստեան տօնն էր։ — “Հոգեգալուստը լաւ օր է, — ասում էր մայրս, — եթէ երեխան այս օրը վարժատուն մտնէ, շատ բան կը սովորի, նրա համար որ, Հոգին Սուրբ այսօր առաքեալներին լեզու տուեց„։*

*Ես մինչեւ այսօր չեմ մոռացել այն խօսքերը, որ մայրս ինձ վարժապետին յանձնելու ժամանակ ասաց. — “Տէր հայր, ծառայ լինիմ սուրբ աջիդ, որդիս քեզ համար ղուլ (ճորտ) եմ բերել, միսը քեզ, ոսկորը ինձ. ինչ ուզում ես, արա, միայն թէ երեխաս մի բան սովորի„...*

*Ես բոլորովին չը հասկացայ, թէ ինչ էին նշանակում մօրս խօսքերը, միայն լսեցի, որ տէրտէրը խոստացաւ ինձ լաւ ուսում տալ, բոլոր գրքերը կարդացնել, աւելացնելով, թէ “հանգուցեալ հայրս„ իր լաւ բարեկամն է եղել, եւ “նրա խաթրու„ ինձ վրայ առանձին ուշադրութիւն կը դարձնէ եւ այլն։*

*Տէր Թօդիկը — այսպէս էր վարժապետիս անունը — իր ուսումը ստացել էր Աղթամարայ անապատում։ Թէ ինչու համար նա թողեց վանքը, — այդ ես չը գիտեմ,*

միայն ասում էին, որ նա բերեց իր հետ գիտութեան խիստ ահագին պաշար։ Տէր Թօդիկը մեծ համարում ունէր, ոչ միայն մեր քաղաքի մէջ, այլ մեր ամբողջ գաւառում հռչակուած էր նրա իմաստութիւնը։ Ով որ մի երազ էր տեսել, նրա մօտն էր վազում եւ նրանից բացատրութիւն խնդրում։ Ում երեխան հիւանդ էր, նրան Նարեկ կամ Աւետարան էր կարդալ տալիս, որ առողջանայ։ Ով որ մի գործ էր կամենում սկսել, նրա “Տէր-ողորմեայի„ վրայ էր փորձում իր բախտը։ Մի խօսքով, նա մեր գաւառի մարգարէն էր. ամեն մարդ նրա խորհրդին էր դիմում, ամեն մարդ նրանից խրատ էր ընդունում...

Աստուած իմ, ի՛նչեր չէին պատմում նրա մասին... Ասում էին, տէր հայրը իր եղունգի վրայ մի բան է գրում եւ այն գրի զօրութեամբ կնիկները իրանց առջեւ ծով են տեսնում եւ իսկոյն տկլորվում են... Ասում էին, թէ նա մի աղօթք է կարդում, եւ գարու հատիկները մրջիւնի նման բարձրանում են դէպի տան սիւնը, եւ ընդհակառակն, նրա խօսքով արագաշարժ կարիճը քարացած կանգնում է եւ բնաւ չէ շարժվում։ Ասում էին, ծտերի բերանը աղօթքով կապում է եւ նրանք չեն կարողանում արտերի ցորեանը ուտել։ Ասում էին դեւերին, սատանաներին բռնում է, լցնում է ապակեայ սրուակների մէջ եւ այնպէս պահում է, որ մարդկանց վնաս չը տան։ — Այսպիսի շատ բաներ խօսում էին նրա մասին, ես բոլորին, բոլորին հաւատում էի։ Սկզբում իմ վրայ սարսափ էին բերում այս խօսքերը, բայց յետոյ այնքան ընտելացայ, որ մտածում էի. — “Տէր Աստուած, ե՞րբ կը լինի, որ ես էլ այդ ամենը սովորեմ եւ իմաստուն մարդ դառնամ„...

Ի՞նչպէս չը հաւատայի, երբ ամեն օր տեսնում էի նրա տունը լիքն էր հայի, թուրքի, ջհուդի եւ զանազան ազգերի

կնիկներով։ Որը տէր հօր համար ընծայ էր բերել մի քանի հատ ձու, որը մի աքաղաղ, որը մի շիշ արաղ, որը մի զոյգ գուլպայ, վերջապէս ոչ մի մարդ դատարկաձեռն ոտք չէր կոխում նրա շէմքի վրայ։ Ի՞նչ էր նրանց դարդը։ Մէկը չբերք էր. տէր հայրը նրա համար մի բան էր գրում, որ երեխայ ունենայ։ Միւսի տղամարդը ուրիշին էր սիրում. տէր հայրը իր «Վեցհազարեակի» շնորհիւ նրա սէրը սառեցնում էր օտար կնկանից եւ իր կնոջն էր սիրել տալիս։ Մէկ ուրիշը ուզում էր մարդի գնալ. տէր հայրը իր «Թիլիսմանների» զօրութեամբ նրա բախտը բաց էր անում։ — Այսպիսի շատ բաներ անում էր նա, եւ ասում էին, որ բոլորը կատարվում է...

Իր եկեղեցական պաշտօնի մէջ տէր Թօդիկը նոյնպէս իր ժողովրդի թէ հոգեւոր, թէ բարոյական մխիթարութիւնն էր։ Ամեն մարդ նայում էր նրան, որպէս մի սրբութեան վրայ։ Երբ սկսվում էր մեծ պասը, մեր թաղեցիքը սովորութիւն ունէին կէսաւուր ժամից առաջ հաւաքուել եկեղեցու բակում մի խուցի մէջ։ Վարժապետս գնում էր այնտեղ, նրանց համար կարդում էր եւ մեկնում էր մի գիրք։ Ես մինչեւ այսօր չեմ մոռացել այն ահագին մեծ գիրքը. նրան կոչում էին «Այսմաւուրք»։ Նա այնքան ծանր էր, որ հոգիս դուրս էր գալիս, մինչեւ տանում էի եկեղեցու խուցը։ Թէ ի՞նչ էր գրած նրա մէջ, ես չը գիտէի, բայց շատ անգամ գիրքը տանելու ժամանակ մտածում էի. — «Ախ, Աստուած ջան, ի՞նչ կը լինի, որ այդ գրքի բոլոր գրուածները իմ գլուխը լցնես»։ Յետոյ ինձ ու ինձ ծիծաղում էի. — «Հաւ, ասում էի, իմ պստիկ գլուխը ո՞նց կարող է այս ամեն բաները իր մէջ տանել»։ Յետոյ էլի մտածում էի. — «Վարժապետիս գլուխը խօ իմից մեծ չէ, բա ի՞նչու նա ամենը իմանում է»։

Թաղի ծերունիները հաւաքուած էին լինում եկեղեցու խուցի մէջ, սպասում էին տէր Հօր գալստեանը: Նա տանում էր գիրքը, դնում էր փոքրիկ գրակալի վրայ, եւ ձեռքերս կուրծքիս վրայ դրած, կանգնում էի այնտեղ: Նա գալիս էր: Ախ, ինչպէս պատուով ընդունում էին նրան, մարդ չէր մնում, որ սուրբ աջը չը համբուրէ եւ նրա օրհնութիւնը չառնէ: Նա նստում էր գրակալի մօտ, բաց էր անում գիրքը, կարդում էր եւ պատմում էր նրա միտքը: Ես մինչեւ այսօր չեմ մոռացել մի քանի բաներ, որ այն ժամանակ սովորեցայ սուրբերի, ճգնաւորների, աբեղաների հրաշագործութիւնների մասին, թէ ինչպէս նրանք խորոված աղաւնիներ էին թռցնում, ինչպէս հրեշտակների հետ էին խօսում, ինչպէս դեւերին բռնում էին եւ իրանց սպասաւորութիւն էին անել տալիս, կամ ինչպէս շաբաթներով ոչինչ չէին ուտում, բայց Աստուած նրանց համար երկնքից մանանայ էր ուղարկում: — Ո՞վ է իմանում, հազար ու մէկ այսպիսի բաներ էի լսում, որոնք լցնում էին իմ սիրտը մի սրբազան ջերմեռանդութեամբ, եւ ես մտածում էի. — “Թող տամ այս փուչ աշխարհը, գնամ սարերը, մտնեմ քարերի մէջ, ճգնաւոր դառնամ, որ ես էլ հրեշտակների հետ խօսեմ, որ ես էլ երկնքի մանանայով կերակրուեմ„...

Երբեմն ծերունիներից ոմանք առաջարկում էին վարժապետիս խորին աստուածաբանական հարցեր: Նա բոլորի պատասխանը խիստ խելացի կերպով տալիս էր...



## Զ.

## ԴՊՐՈՑ

*Մեր դպրոցը տէր Թօդիկի աւելորդ սենեակներից մէկն էր, անասունների ախոռին շատ մօտ եւ համարեա կպած նրա հետ։ Այն նեղ եւ խեղդուած խուցի մէջ լցուած էին թւով մինչեւ քառասուն աշակերտներ. բացի աշակերտներից, այնտեղ կապած էին տէր հօր նորածին հորթերից երեքը։ Ձմեռը շատ լաւ էր այնտեղ, թէեւ վառելիք չունէինք, բայց ախոռից դասատան մէջ ծակուած պատուհանները բաց էինք անում եւ ջերմ գոլը մառախուղի պէս ներս էր թափւում, մեր դասատունը դառնում էր տաք, որպէս բաղնիք։ Ո՜րքան ուրախանում էինք մենք... Թէեւ անասունների շնչառութիւնից գոլորշիացած ջերմութիւնը խեղդելու չափ ծանր էր։ Ամառը շատ վատ էր այնտեղ, որովհետեւ ախոռի մէջ գտնուած անմաքրութիւնների խմորուելուց՝ մի կողմից փչում էր անախորժ գարշահոտութիւն, միւս կողմից գոյանում էին զանազան տեսակ զեռուններ, որոնք լուերի հետ խումբեր կազմելով, ահագին բազմութեամբ արշաւանք էին գործում դէպի մեր դասատունը։ Նրանք այնքան մանր էին, որ աչքը հազիւ էր տեսնում, բայց ո՜րպէս սարսափելի կերպով խայթում էին, — այդ միայն Աստուած գիտէ։*

*Ամբողջ դպրոցը բաղկացած էր մէկ դասատնից. նրա միջումն էին աւանդվում թէ բարձր եւ թէ տարրական գի-*

տութիւնները, սկսեալ այբբենարանից, մինչեւ այն ահագին գիրքը, որ ես հազիւ էի կարողանում մինչեւ ժամատան խուցը տանել: Մեր դասատունը, թուրքի մզկիթի նման, բոլորովին մերկ էր. նստարան, աթոռ, սեղան կոչուած բաները այնտեղ չը կային: Աշակերտները ծալապատիկ նստում էին խոնաւ յատակի վրայ, առանց տախտակամածի, որ միայն պատած էր ճախճային բոյսերից հիւսած հասիրներով: Վարժապետը միայն իր տակին փռած ունէր այծի մորթի եւ մի քանի հարուստների որդիները նոյնպէս ունէին փոքրիկ օթոցներ, որ բերել էին իրանց տներից: Միակ առարկաները, որոնք յիշեցնում էին, թէ այն մթին եւ գերեզմանի պէս խոնաւ սենեակը դպրոց էր, — էին՝ ֆալախկան եւ մի խուրձ դալար ճիպոտներ նրա մօտ դրած . . .

Ախ, քանի՞ քանի՞ անգամ մենք գողացանք, քանի՞ անգամ կտրեցինք այն անիծուած ֆալախկան, դարձեալ չը կարողացանք ազատուել նրանից: Նա միշտ կար եւ կար . . . Նա միշտ անպակաս մնաց մեր դպրոցից . . . Երբ ես շատ ուշ, վերջին ժամանակներում, կարդացի ինկուիզիցիայի հնարած գործիքների նկարագրութիւնը եւ նրանց տեսակները, զարմացայ, թէ ի՞նչպէս էր պատահել, որ կաթոլիկ եկեղեցու հանճարը, որ այնքան զօրաւոր էր տանջանքի մեքենաներ ստեղծելու մէջ, բոլորովին ի նկատի չէր առել ֆալախկան — այդ, աշակերտի հոգին եւ մարմինը մաշող գործիքը . . . Աշակերտի մերկ ոտները դնել այդ պատժական մեքենայի մէջ, պտտացնելով վեր բարձրացնել, յետոյ դալար ճիպոտներով այնքան հարուածել, մինչեւ ողորմելի զոհը բոլորովին թուլանայ, ուշաթափ լինի, — ահա այդ էր ֆալախկայի նշանակութիւնը: Ամենաանտանելին այն էր, որ պատժուող աշակերտին ծեծել էին տալիս նրա բարեկամի, կամ ամենասիրելի ընկերի ձեռքով: Եթէ այդ վերջինը հարուածները

թուլացնում էր, կամ հրաժարվում էր ծեծելուց, նրան եւս ենթարկում էին մի եւ նոյն գանահարութեանը:

Վաղ-առաւօտեան սկսվում էր դասատուութիւնը: Վարժապետը մի անկիւնում նստած էր լինում, որպէս քուրմը իր խորին սրբազնութեան մէջ: Նրա առջեւ դրած էր փոքրիկ գրակալը, — այդ նրա ամբիոնն էր: Աշակերտները հերթով մօտենում էին, վարժապետի աջը համբուրում էին, չոքում էին նրա առջեւ եւ դասագրքերը դնելով գրակալի վրայ, սկսում էին “համար տալ„ (դասը ասել): Սովորաբար ամեն մի սխալի համար խուրջինչիւրը ընդունում էր “խըչտափէ„, մի-մի սաստիկ զարկ իր ափի մէջ: Իսկ եթէ դասը բոլորովին սերտած չէր, նրա համար պատրաստ էր անիծուած ֆալախկան...

Այդ “խըչտափ„ կոչուածը Աստուծոյ մի առանձին պատիժն էր. նա շինուած էր ամենաամուր փայտից եւ փոքրիկ թիակի ձեւ ունէր: Հին գրքերի մէջ գտնուած բոլոր ասացուածքները, որոնք վերաբերում էին ծեծելու, գանահարութեան, փորագրուած էին նրա վրայ: Օրինակ, այսպիսի խօսքեր. “Որ ոչ լուիցէ ունկամբ, լուիցէ թիկամբ„ — “Ծառայ, որ ոչ գիտիցէ զկամս տեառն եւ արժան ինչ գանի գործիցէ, արբցէ գան սակաւ, իսկ որ գիտիցէ եւ մեղիցէ, արբցէ գան բազում„ — “Դառն է ծառ խրատու, իսկ պտուղ նորա քաղցր„... Խրատելու այդ գործիքը առանձնապէս պատրաստվում էր վարժապետների համար. եւ տէր Թօդիկը իր ունեցածը, որպէս պատմում էր, ընծայ էր ստացել իր վարժապետից, որպէս յիշատակ եւ որպէս նշան իր մեծաքայլ յառաջադիմութեան:

Պատիժների մէջ մինչեւ այսօր չեմ մոռացել մէկը, որը որքան ծիծաղելի, այնքան էլ սարսափելի էր: Աշակերտին կանգնեցնում էին ոտքի վրայ եւ երկու ձեռքով բռնել

*էին տալիս մի աղէւս, կամ աՀագին Այսմաւուրքը։ Նա ժամերով, Հնդկական Փագիրի նման, այդ ծանր գիրքը պէտք է պահէր գլխից բարձր, երկու ափերի մէջ։ Թեւքերը յոգնում էին, ջղերը թուլանում էին, բայց այդ ոչինչ։ Գլխաւոր տանջանքը նրանումն էր, որ յանցաւորը պէտք է կանգնէր մէկ ոտքի վրայ. միւս ոտքը գետին դնելու համարձակութիւն չունէր։ Սովորաբար ընտրում էին ձախ ոտքը, իսկ աջը պէտք է վեր բարձրացած պահէր։ Մի աշակերտ մտրակը ձեռին, կանգնած նրա մօտ, հսկում էր այդ անտանելի մարմնամարզութեան վրայ։ Երբ պատահում էր յանցաւորին ոտքը գետին դնել, նա իսկոյն մտրակով զարկում էր ոտին։ Այդ սատանայական պատժին ես այն աստիճան սովորած էի, որ երկար կարողանում էի սագի նման մէկ ոտքի վրայ կանգնած մնալ։*

*Մեր դպրոցը ունէր իր ուրիշ խստութիւնները։*

*Վաղ-առաւօտեան պէտք է դասատուն գայինք բոլորովին անօթի, առանց մի պատառ հաց անգամ բերան դնելու։ Թէյի կամ սուրճի գործածութիւնը այն ժամանակ դեռ մեր երկրում մտած չէր։ Իսկ եթէ մեր տներում գտնուած թանից կամ մածունից նախաճաշիկ անէինք, դրա համար սաստիկ պատիժներ էին նշանակուած։ Վարժապետը ասում էր. «կուշտ փորով չէ կարելի դաս սովորել, երբ մարդ մի բան ուտում է, խելքը պակսում է»։ Եւ նա օրինակ էր բերում ճգնաւորներին, վարդապետներին, որոնք ոչինչ չէին ուտում, բայց իրանցից գրքեր էին շարադրում։*

*Յիշեալ պատուէրը մենք կատարում էինք ամենայն ճշտութեամբ. զեղծումներ անել նրա դէմ անկարելի էր, որովհետեւ վարժապետը սատանայի պէս իմանում էր, երբ աշակերտը մի բան կերած էր լինում։ Ահա ինչպէս էր իմանում. նախ քան ուսման սկսուելը, վարժապետը իր աշա-*

կերտի վրայ կախած ունէր, սկսում էր նրա լեզուն քննել, որ տեսնէ, արդեօք նա իր ծոմը լուծել էր, թէ ոչ: Ցայտնի բան է, անսուաղ մարդու լեզուն աւելի սպիտակ գոյն է ունենում, նրա մակերեւոյթի վրայ ճերմակ փառ է նստած լինում. իսկ երբ մի բան ուտում կամ խմում է, լեզուն մաքրվում է եւ աւելի կարմիր գոյն է ստանում: Այդ պատճառով մենք ամեն առաւօտ ոչ միայն ոչինչ չէինք ուտում, այլ մինչեւ անգամ վախենում էինք երեսներս լուանալու ժամանակ բերաններս մաքրել ջրով, որ չլինէ թէ մեր լեզուի ճերմակութիւնը սրբուի, եւ վարժապետը ասէ, թէ ծոմը լուծել ենք... Եւ այսպէս, մինչեւ կէսօր մենք պարապում էինք բոլորովին սոված փորով. գլուխներս պտտվում էր, աչքներիս առջեւը սեւանում էր քաղցածութիւնից, դարձեալ ոչինչ չէինք կարողանում սովորել:

Մեր ժամացոյցը պատի ստուերն էր, որը գետնի վրայ մինչեւ մի նշանակեալ խազ հասնելը, գիտէինք, թէ արդէն կէսօր է: Այն ժամանակ միայն թոյլտուութիւն էինք ստանում ճաշելու: Բայց ո՜րքան անհամբերութեամբ սպասում էինք, մինչեւ ստուերը հասնում էր խազին... Կարծես, արեւն էլ մեր վարժապետի նման սիրտ չունէր. նա միշտ դանդաղ եւ դանդաղ էր գնում, եւ ստուերը խիստ թոյլ կերպով էր տարածվում...

Ճաշը ուտում էինք դասատան մէջ: Աշակերտները իրանց հետ էին բերում բոլոր պաշարը եւ անուշ պատառներից բաժին էին հանում տէր հօր համար, այնպէս որ, նրա մասը աւելի ճոխ էր լինում եւ բազմատեսակ, մինչեւ անգամ երեցկինն ու նրա որդիքն էլ կերակրվում էին տէր հօր սեղանից:

Ճաշից յետոյ, թէեւ մենք ունէինք մի քանի հանգըստութեան ժամեր, բայց սաստիկ արգելուած էին խաղերը:

Ծաղը համարվում էր մեզ համար մի տեսակ չարութիւն, որ ընդդէմ էր համեստութեան եւ հանդարտութեան կանոններին։ Աշակերտը պէտք է լինէր լուռ, անշարժ, ամօթխած եւ խոնարհ։ Այդ պատճառով սաստիկ պատժվում էր աշակերտը, երբ նրան նկատում էին խաղալիս, աւելի վատթար, երբ նրա մօտ գտնում էին խաղալիկներ։ Այդ մասին երբեմն դպրոցում անակնկալ խուզարկութիւններ էին լինում, աշակերտների գրպանները որոնում էին։

Հարուստների որդիքը բացառութիւն էին կազմում դպրոցի խիստ կարգապահութեան մէջ. Նրանց շատ բան ներվում էր. դասատան մէջ առաջին տեղումն էին նստացնում, իսկ դրսում նրանք անպատիժ էին մնում, երբ ծեծում էին իրանց աղքատ ընկերներին։ Այսպիսիներից մէկն էր Ալօ անունով մի տղայ, որ մեր քաղաքի առաջին հարստի որդին էր. Նրա հայրը արքունի փողերանոցի կապալառու էր։ Այն ժամանակ Պարսկաստանի գլխաւոր քաղաքներում դրամներ էին կտրում եւ կտրելու իրաւունքը կառավարութիւնը կապալով տալիս էր մասնաւոր անձինքների։ Ալօի հայրը Ծոյ քաղաքի փողերանոցի պետն էր եւ այդ արտօնութիւնը սերունդից սերունդ, որպէս մի առանձնաշնորհութիւն, տուած էր նրանց տոհմին։ Այս պատճառով այդ տոհմը կոչում էին "զառաբիներ"։

Ալօն մեր ամենաանպիտան աշակերտներից մէկն էր, ոչ ոք չէր սիրում նրան, բացի վարժապետից։ Երբ պատահում էր աշակերտներից մէկին պատժել, Ալօն առաջինն էր լինում, որ խնդրում էր վարժապետից իրան թոյլ տալ կատարելու դահճի պաշտօնը։ Ծեծել իր ընկերներին, նահատակել նրանց, — դա զուարճութիւն էր պատճառում անսիրտ Ալօին, եւ մեր վարժապետը երբէք չէր զրկում նրան այդ ուրախութիւնից... Ամեն օր կը գար նա դպրոց, մի նոր

գիրք իր հետ բերելով, ցոյց կը տար վարժապետին ու կ՚ասէր. “Հայրս ասաց, որ այս գրքից դաս տաք„։ — “Լաւ„, կը պատասխանէր վարժապետը, — “դրա վրայ կարդա„։

Միանգամ ես չը կարողացայ համբերել, ասեցի Ալօին։

— Դու մի կանոն Սաղմոսը դեռ հեգելով ես կարդում, այդ մեծ գիրքը ո՞նց պիտի կարդաս։

— Իմ հայրն էլ մեծ մարդ է, պատասխանեց նա մի առանձին հպարտութեամբ։

— Քո հայրը մեծ մարդ է, այդ ես իմանում եմ, բայց որդին մեծ գիրք կարդալու համար պէտք է դեռ եւս մի քանի տարի սովորէ։

— Ի՞նչ պիտի սովորեմ... հայրս ասաց, տար այդ գիրքը կարդա, որ դպրոցի մէջ առաջին աշակերտը լինես։

— Որպէս ինքը քաղաքի մէջ առաջին մարդն է, պատասխանեցի ես ծիծաղելով։

Այդ միջոցին զգացի ապտակի մի սաստիկ հարուած երեսիս վրայ։ Ես էլ պատասխանեցի նրան իմ զօրեղ մուշտիով։ Անպիտանը իսկոյն վազեց վարժապետի մօտ եւ ինձ վրայ գանգատուեց։ Զեղ եմ թողնում երկարացնել այն անտանելի պատիժը, որ ես ստացայ իմ յանդգնութեան համար, ես համարձակուել էի իմ մուշտիով պատասխանել արքունի փողերանոցի գլխաւորի որդուն... այդ անկարելի բան էր։ Բայց այն օրից իմ մէջ ծագեց մի սաստիկ ատելութիւն դէպի ամեն ինչ, որ արքունական էր եւ դէպի ամեն մարդ, որ հարստացել էր արքունիքի շնորհիւ...

Հարուստների որդիների նախապատուութիւնը դպրոցի մէջ առանց պատճառի չէր. Նրանք տօն օրերում վարժա-

պետի համար ընծաներ էին բերում գինի, արաղ, իւղ, պանիր եւ դրանց նման բաներ։ Նրան հայրերը վարժապետին "խալաթ" էին տալիս, երբ որդիները մի գրքի կարդալը վերջացնում էին եւ սկսում էին միւսը։ Բայց ես աղքատ էի. մայրս դժուարութեամբ կարողանում էր վճարել իմ ամսականը, իսկ ընծաների փոխարէն ես կատարում էի վարժապետիս տնային գործերը։ Առաւօտից մինչեւ երեկոյ հանգստութիւն չունէի. աղբիւրից խմելու ջուր էի բերում, կովերի համար ուտելու խոտ էի քաղում դաշտից, հորթերը բըռնում էի, մինչեւ երէցկինը կովերը կթում էր, եւ եթէ ուրիշ գործ չէր լինում, ճաշից յետոյ նստում էի վարժապետիս կողքին, ճանճեր էի քշում, որ նրա անուշ քունը տանի . . .

Պատահում էր, մեր թաղում մկրտութիւն էր լինում կամ թաղում. այն օրը վարժապետիս համար հարսանիք էր, իսկ մեզ համար մահ։ Աշակերտներից մի քանիսը, որոնք մեծ էին հասակով եւ տիրացութիւն անել գիտէին, վեր էին առնում տէր հօր փիլոնը, մաշտոցը, բուրվառը եւ քահանայական այլ սպասները։ Նրանք գնում էին խորհրդի տեղը։ Այսպիսի դէպքերում, երբ կարող էինք մի փոքր ազատ շունչ քաշել, աւելի դառն էր լինում մեր վիճակը։ Վարժապետը մտածելով, որ իր բացակայութեան ժամանակ մենք անկարգութիւններ կ'անենք, հնարել էր մի սատանայական միջոց մեզ հանգիստ պահելու համար։ Նա մեզ նստացնում էր միմեանցից հեռու, մեր հագուստի լայն փէշերը տարածում էր գետնի վրայ, նրանց վրայ ածում էր մանր աւազ, յետոյ աւազը դրոշմում էր փայտեայ կնիքով, որ յատկապէս դրա համար պատրաստուած էր։ Երեւակայեցէք մեր դրութիւնը. ամբողջ ժամերով պէտք է մեխած մնաս գետնի վրայ, մի շարժում անգամ անել կարող չես, որով-

հետեւ խկոյն աւազը կը խառնուի, կնիքը կը լուծուի, եւ վարժապետը այդ տեսնելով, հոգիդ կ՚առնէ...

Այսպիսի պատիժներին խիստ յաճախ ենթարկվում էի ես։ Բարեբար Աստուած, ի՞նչ պէտք է անէի, խօ մեռել չէի, որ անշարժ մնայի։ Պատահում որ, կամ լուն էր կծում, կամ ճանճն էր նեղացնում, կամ վերջապէս մի ուրիշ հարկաւորութիւն ունէի... Վարժապետը դառնում էր տուն՝ մի փոքր տաքացած գլխով. Նա գտնում էր կնիքը լուծուած, այն ժամանակ պատրաստ էր ինձ համար կամ անիծուած ֆալախկան, կամ մերկ ծնկներով չոքել աղեւսի մանրած կտորների եւ կամ սիմինդրի հատիկների վրայ։ — Դարձեալ պէտք է անշարժ մնայի...

Լինում էին օրեր, որ պատիժը ընդհանուր էր դառնում. աշակերտները բոլորը միասին պատժվում էին։ Տարուայ մէջ մի քանի անգամ մենք ունենում էինք արձակուրդներ։ Մեծ արձակուրդները լինում էին զատկի եւ ծննդեան տօների ժամանակ, իւրաքանչիւր տօնին մի-մի շաբաթ։ Երբ տօներից յետոյ աշակերտները կրկին հաւաքվում էին դպրոցը, մեր վարժապետը առանց խտրութեան աշակերտների ոտները դնում էր ֆալախկայի մէջ եւ բոլորին հաւասարապէս ծեծում էր։ Ի՞նչու համար։ — Այդ նրա համար էր, գուցէ աշակերտները արձակուրդի ժամանակ իրանց տներում, կամ դրսում որ եւ իցէ անկարգութիւն արած լինէին, ի հարկէ, այդ կարծեցեալ անկարգութիւնը ստուգել անհնարին էր, ուրեմն, պէտք էր թէ մեղաւորին եւ թէ անմեղին հաւասարապէս պատժել... Այս բարբարոսութեան մէջ մի ուրիշ միտք եւս կար։ Ինչպէս լաւ ձիաւորները, ձիու վրայ նստածին պէս, տալիս են նրան մի քանի մտրակի զարկ, որ թմրած անասունը զգաստանայ, գրգռուի, — այնպէս էլ մեր վարժապետը հանգստի օրերից յետոյ լա-

*դու էիր իմ մխիթարութիւնը... դու էիր քաղցրացնում իմ տխուր ժամերի դառնութիւնը...*

*Սոնան վարժապետիս աղջիկն էր։ Ես իմ կեանքում չեմ տեսել մի այնպիսի բարի եւ անմեղ բնաւորութիւն։ Պատահում էր, երբ վարժապետս ծեծում էր ինձ, Սոնան մի թաքուն տեղ նստած, լաց էր լինում։ Խե՜ղճ աղջիկ, ի՞նչու էր լաց լինում նա։*



Է.

# ՍԻՐՈՅ ԱՌԱՋԻՆ ԶԳԱՑՄՈՒՆՔԸ

Վարժապետիս ընտանիքը կազմում էին երեք հոգի՝ կինը, որդին եւ փոքրիկ Սօնան։

Նրա կնոջը կոչում էին Գիւլ-ջհան. չը նայելով իր գեղեցիկ անուանը, որ նշանակում է աշխարհի վարդը, երէցկինը աշխարհի ամենաայլանդակ արարածներից մէկն էր։ Այսուամենայնիւ, տէր հայրը, եթէ չասենք սիրում էր, բայց բաւականին յարգում էր նրան։ Թէեւ պատահած ժամանակ մանր հայհոյանքներ տալիս էր, բայց շատ սակաւ էր պատահում, որ ծեծէր նրան։ Դա ունէր իր առանձին պատճառները, որպէս մարգարէի առաջին երկրպագուն լինում է իր կինը, այսպէս էլ “աշխարհի վարդը„ տէր հօր ամենամոլեռանդ պաշտողներիցն էր։ Նա էր հռչակում կանանց հասարակութեան մէջ, թէ որպիսի հրաշալի ներգործութիւններ էին անում իր ամուսնի կախարդական թղթերը։ Նա էր տարածում լուրեր, թէ այս ինչ եւ այն ինչ տիկինը որպիսի բախտի հասաւ տէր հօր կախարդութիւնների շնորհիւ։ Այսպիսով աւելանում էր վարժապետիս յաճախորդների թիւը։

Որդին — Ստեփանը — վարժապետիս երեխաների անդրանիկն էր. դա մի սիրուն տղայ էր, որ ամենեւին նման չէր մօրը։ Միշտ լուռ, միշտ մունջ, գունաթափ դէմքով եւ մարած աչքերով Ստեփանը մի ապուշ երեխայ էր։ Չէր կարելի առանց խղճալու նայել նրա երկչոտ երեսին։ Նրա հետ

խօսելու ժամանակ ես միշտ նկատում էի, որ առանց պատճառի ժպտում էր, ծիծաղում էր, արձակում մի քանի անմիտ, անկապ խօսքեր եւ իսկոյն գժի նման փախչում էր, վախենալով, չլինի թէ իրան ծեծեն: Խեղճը ցնորուած էր: Երբեմն ամբողջ գիշերներ անցուցանում էր նա անհանգիստ զառանցութեան մէջ, շատ անգամ գնած տեղից վեր էր թռչում, եւ անգիտակցաբար գնում էր, ուր որ հանդիպում էր: Այս պատճառով նրան կապում էին: Հօր բոլոր կախարդական հնարները, որոնք ուրիշների վրայ հրաշալի կերպով ազդում էին, բոլորովին անզօր մնացին գեղեցիկ Ստեփանի առողջութիւնը վերականգնելու, խեղճը մնաց միշտ խելագար: Որքան ճիշտ էր, ես չը գիտեմ, միայն պատմում էին, թէ նրա խելագարութեան պատճառը եղել էր նոյն իսկ հայրը: Ստեփանը ինձ նման չար եւ անհանգիստ տղայ էր. մի օր հայրը բարկանալով նրա վրայ, կամեցել էր “խրատել” եւ այս պատճառով կախ էր տուել ջրհորի մէջ, — ասում էին, այն օրից խեղճ Ստեփանին պատահել էր այդ դժբախտութիւնը: Պատմում էին, որ դեւերը այնտեղ զարկել էին Ստեփանին, որովհետեւ ջրհորը միշտ լիքն է լինում դեւերով: Բայց լինում էին օրեր, որ Ստեփանի խելքը գլուխն էր գալիս, նա խիստ քաղցր եւ բարի երեխայ էր դառնում. մենք ամենքս ուրախանում էինք եւ սիրում էինք նրան:

Աղջիկը — Սօնան — նոյնպէս լուռ երեխայ էր, եւ չը նայելով իր փոքրիկ հասակին, կատարում էր տնային շատ գործեր: Սօնան կրում էր եղբօր հեզ, հանդարտ եւ մուգ-երկնագոյն աչքերը, այն զանազանութեամբ միայն, որ քրոջ աչքերը աւելի պայծառ եւ կենդանի էին, մինչդեռ եղբօրը բոլորովին կորցրել էին իրանց կենդանի փայլը: Սօնայի ծամերը նոյնպէս աւելի մուգ գոյն ունէին, քան եղբօր շէկ, մետաքսանման մազերը, եւ աւելի խիտ էին, քան թէ նրանը:

Զարմանալին այն էր, որ այդ երկու երեխաներից ոչ մէկը նմանութիւն չունէր ոչ հօր հետ, որի կերպարանքի մէջ կային մի քանի որոշ մոնգոլական գծեր, եւ ոչ նման էին մօրը, որի դէմքը վախեցնելու չափ տգեղ էր։

Չը նայելով, որ տէր Թօդիկը 700 ընտանիքից բաղկացած մի ամբողջ թաղի աւագ քահանան էր, չը նայելով, որ բացի դրանից նա վիճակաւոր առաջնորդի գործակալի պաշտօն էր կատարում, եւ այդ բոլորից առատ արդիւնք էր ստանում (էլ չեմ խօսում դպրոցի մասին) — այնուամենայնիւ, նրա ապրուստը, նրա կեցութիւնը խիստ չքաւոր էր։ Մի քանի մթին սենեակներ, ծեփած սպիտակ կաւով, նեղ բակ ցածրիկ շրջապարիսպով, — այդ բոլորը կացուցանում էին նրա անշուք բնակարանը, ուր տիրում էր մշտական փոշի, աղտ, խորին տխրութեան հետ։ Դրացիները տէր հօր այսպիսի չքաւոր կեցութիւնը վերաբերում էին նրա անփառասիրութեանը եւ նրա՝ աշխարհի վայելչութիւններին չը ցանկացող՝ բնաւորութեանը։ Դա մասամբ իրաւացի կը լինէր, եթէ ագահներն էլ այսպիսի յատկութիւններ չունենային։ Ժլատները նոյնպէս անապատի մէջ են ապրում, որպէս տէր Թօդիկը իր մերկ ճգնարանում։ Դէրվիշութիւնը առհասարակ գրաւիչ է լինում եւ հրապուրում է ռամկի սնահաւատութիւնը, թէ եւ դէրվիշի քրքրուած վերարկուի տակ շատ անգամ ծածկվում է մի շահասէր եւ հարստահարիչ ոգի...։

Վերջին տարիներում, մայրս չը կարողանալով վարժապետի ամսականը վճարել, ինձ բոլորովին ծանրաբեռնեցին տնային գործերով, այնպէս որ, ժամանակ չէի գտնում դասերս պատրաստելու։ Ամբողջ ցերեկը հոգիս դուրս էր գալիս կամ երէցկնոջ, կամ տէր հօր պատուէրները կատարելով։ Մնում էր պարապել միայն գիշերով, իսկ այդ եւս շատ անգամ չէր յաջողվում, որովհետեւ ճրագ եւ լոյս չունե-

նալու համար, միշտ ստիպուած էինք քնել շատ վաղ։ Քեռուս տան հետ աւելի յարաբերութիւններ չունէինք. տայրս իր եղբայրներից ոչինչ օժանդակութիւն չէր ստանում եւ եթէ հնար լինէր, նա կը թողնէր այն խեղդուած խրճիթը, որ քեռիներս շնորհել էին մեզ բնակութեան համար։ Մեր յոյսը մնացել էր մեր բարերարի՝ որսորդ Ավօի վրայ։ Նա էլ դպրոցի վերաբերութեամբ ինձ չէր օգնում, եւ մինչեւ անգամ խիստ անախորժ էր թւում նրան, որ ես այնտեղ ուսում էի առնում։ Ես դեռ չեմ մոռացել այն խօսքը, որ մի օր հայրական բարեսրտութեամբ որսորդը ասաց ինձ.

— Փարհատ, դուրս եկ այդ դժոխքից, դու բոլորովին կը բթանաս այնտեղ։

— Դուրս գամ ի՞նչ անեմ, ի՞նչ սովորեմ, հարցրի ես։

— Մօտի՛ր քեռիներիդ արհեստանոցը, զէնք շինել սովորի՛ր, պատասխանեց նա։

— Մի՞թէ ուսումը վատ է։

— Այդ ուսում չէ, որ դու սովորում ես։

Յետոյ նա սկսում էր երկար ու երկար բացատրել ինձ, թէ ինչ բան է ճշմարիտ ուսումը, բայց ես այն ժամանակ չէի հասկանում, միայն զարմանում էի, թէ ինչպէս այդ կոշտ, կոպիտ մարդը, որ անդադար գազանների հետ պատերազմելով, գազանի բնաւորութիւն էր ստացել, — այնքան լաւ, այնքան հիմնաւոր կերպով խօսում էր ուսման վրայ...

Որսորդը շատ մօտ բարեկամ էր իմ քեռիներից մէկի հետ, որին կոչում էին Մինաս. դա բոլորովին ձրի շինում էր, նորոգում էր որսորդի զէնքերը, երբ նրանից որ եւ իցէ մասը խանգարուած էր լինում։ Այդ Մինասի հետ խօսել էր որսորդը, համոզել էր նրան, որ ինձ վեր առնեն իրանց արհեստանոցը որպէս աշակերտ։ Ես սիրում էի այդ արհեստը, իմ սիրտը դողդողում էր ուրախութիւնից, երբ

քեռիներիս արհեստանոցն էի մտնում, եւ ամբողջ ժամեր նստած այն տեղ, խորին հոգեզմայլութեամբ նայում էի գեղեցիկ, փայլուն զէնքերին, որ դուրս էին գալիս քեռիներիս ճարտար ձեռքից։ Բայց մայրս սատանայի նման հակառակ եղաւ եւ չը թողեց, որ ես այդ արհեստը սովորէի։ Նա ատելով քեռիներիս, ատում էր եւ նրանց արհեստը։ Նա կրկնում էր մի եւ նոյն խօսքերը, որ ես շատ անգամ լսել էի վարժապետից, թէ բոլոր զէնագործները մեղաւոր մարդիկ են, բոլորն էլ դժոխքը կը գնան։

— Ի՞նչու, միանգամ հարցրի ես։

— Նրա համար որ թուր, սուր, հրացաններ են պատրաստում եւ այդ զէնքերով մարդիկ միմեանց կոտորում են, պատասխանեց նա։

Թէ այսպէս, թէ այնպէս քեռիներիս արհեստանոցը մտնելը ինձ չը յաջողուեցաւ. ես դարձեալ մնացի այն "դժոխքի" մէջ, որպէս կոչում էր նրան որսորդը։

Բայց նոյն "դժոխքի" մէջ ես ունէի մի մխիթարիչ հրեշտակ, որ թեթեւացնում էր իմ կրած վշտերի դառնութիւնը։ Դա Սօնան էր — վարժապետիս աղջիկը։ Թէ ինչ զգացմունք էր այն, որ կապել էր իմ սիրտը այդ նազելի արարածի հետ, — ճշմարիտ, ես էլ չը գիտէի եւ մինչեւ այսօր չեմ կարողացել հասկանալ։

Սօնան ինձ շատ էր օգնում, առաւել այն աշխատութիւնների մէջ, որ ես պէտք է կատարէի վարժապետիս տնտեսութեան մէջ։ Երբ միասին գնում էինք այգին կովերի համար խոտ քաղելու, նա ասում էր ինձ.

— Փարհատ, դու նստիր, դասդ սերտիր, ես կը քաղեմ խոտը։

— Դու մենակ չես կարող բոլորը քաղել, դու կը յոգնես, ասում էի նրան։

Նա ժպտում էր եւ իր հրեշտակային անմեղ բարեսըրտութեամբ ասում էր ինձ։

— Չէ, կարող եմ, ես չեմ յոգնի։ Դու սովորիր, որ հայրս չը ծեծէ քեզ։

Թէեւ Սօնան շատ էր ցանկանում միշտ օգնել ինձ, որ ես ժամանակ գտնէի դասերս պատրաստելու, բայց չէր կարողանում, որովհետեւ, վերջին օրերում նրան արգելեցին մօտենալ ինձ. եւ ես այնուհետեւ միայնակ էի գնում այգում խոտ քաղելու, եւ միշտ տխուր էի լինում, երբ նա ինձ հետ չէր։

Այսպէս անցուցի ես եօթն բոլորակ տարիներ. մի խորհրդաւոր թիւ, որի մէջ թաղնուած են իմ մանկութեան սկզբնական տանջանքները․․․ Այս եօթն տարուայ ընթացքում ես անցայ գիտութեան բոլոր աստիճանները, այսինքն, սովորեցայ այնքան, որքան կարող էր սովորել այն ժամանակ մի բարձր ուսում ստացող աշակերտ։ Ես կարդացել էի բոլոր գրքերը, որ յայտնի էին մեր երկրում, — Սաղմոս, Ժամագիրք, Աւետարան, Հին-Կտակարան, Նարեկ եւ մինչեւ անգամ այն ահագին գիրքը, որ ես փոքր հասակումս դժուարութեամբ կարողանում էի վեր առնել։ Ես կարողանում էի գրել եւ գրածս կարդալ, ես գիտէի եւ մի քանի կանոններ հայոց հին լեզուի քերականութիւնից։ Բայց մի բան, որ չը կարողացայ ձեռք բերել ես, դա էր վարժապետիս խորին գիտութիւնը ոգիների եւ կախարդութիւնների մասին, այդ գիտութիւնը վարժապետս պահում էր իր մօտ որպէս մի գաղտնիք, որին մասնակից լինելու համար պէտք էր տասն — քսան տարի ծառայել նրան։

Նրա դպրոցում աշակերտները երկար տարիներով անշարժ մնում եւ ծերանում էին։ Մօրուքաւոր, անմօրուք, չափահաս, անչափահաս, երեխայ եւ երիտասարդ, բոլորը

խառնուած էին միմեանց։ Տասն տարեկան էի ես, երբ մտայ այդ դպրոցը. այն օրից անցել էր աւելի քան տասն եւ երկու տարի. դա փոքր ժամանակ չէ. այժմ ես բոլորովին հասուն պատանի էի։ Բայց չը նայելով իմ հասակին, վարժապետս վարվում էր ինձ հետ, որպէս մի երեխայի հետ. — դարձեալ նոյն ֆալախկան, դարձեալ նոյն “խչաթէ„ հարուածները ափերիս մէջ, դարձեալ նոյն մերկ ոտներով չոքելը աղեսի կտորտանքի վրայ... մի խօսքով, պատիժների թուից ոչինչ չէր պակասել։ Բայց զարմանալին այն էր, որ ես այն աստիճան սովորած էի այդ պատիժներին, այն աստիճան մեռած էր իմ մէջ պատուի, հպարտութեան եւ անձնասիրութեան զգացմունքը, որ ես անտրտունջ կերպով համբերում էի բոլորին, որպէս էշը, եզը, ձին համբերում են իրանց տիրոջ անգութ հարուածներին։ Բայց միանգամ ընդհակառակն պատահեց։

Մեծ զատկի տօնն էր. աշակերտներից ոչ մէկը չը կարողացաւ պատրաստել “Դանիէլի գիրքը„ եկեղեցում կարդալու համար։ Այդ գիրքը կարդում էին սովորաբար հարուստների որդիքը եւ նրանց ծնողները մի նշանակեալ նուէր էին տալիս եկեղեցուն։ Իսկ այն տօնին վարժապետը իր աշակերտների յառաջադիմութիւնը ժողովրդին ցոյց տալու համար, պահանջում էր, որ այդ գիրքը կարդային անգիր։ Բայց հարուստների որդիների մէջ ո՞րտեղից էր այնքան ընդունակութիւն, որ կարողանային ամբողջ “Դանիէլին„ անգիր պատրաստել։ Մեծ պասի սկզբից նրանք ամեն օր սերտում էին ու սերտում, բայց հէնց որ մօտեցաւ զատիկը, վարժապետը որից որ հարցրեց, չը կարողացաւ կարդալ։ Էլ ուրիշ ճար չը կար. վարժապետը ստիպուած, ինձ յանձնեց պատրաստել “Դանիէլին„։ Այն օրը մեծ պասի վերջին աւագ ուրբաթ օրն էր — Յիսուս Քրիստոսի խաչելութեան եւ չարչարանքի օրը... մի այնքան չարչարանք պէտք էր

մի օրուայ մէջ “Դանիէլն„ պատրաստելու համար։ Աւագ շաբթի կէսօրին վարժապետը հարցրեց, ես կարողացայ կարդալ երեք քառորդ մասը միայն։ Գուցէ մինչեւ երեկոյեան պատարագի սկսուելը, ես կարող կը լինէի մնացածն էլ սերտել, բայց նա համբերել չը կարողացաւ, սաստիկ բարկացաւ եւ նախատեց ինձ ամենակեղտոտ հայհոյանքներով։ Ես էլ համբերել չը կարողացայ, պատասխանեցի նրան մի քանի կոպտութիւններով։ — “Սատանայի լակոտ, ես քո հէրը կ'անիծեմ„... գոռաց նա կատաղելով, եւ որովհետեւ աւելի ժամանակ չունէր, բանտարկեց ինձ ախոռատան մէջ, եւ հրամայեց այնտեղ փակուած պահել, մինչեւ ինքը Ճրագալոյցի երեկոյեան պատարագը կը վերջացնէր, եւ եկեղեցուց վերադառնալով, իմ հոգին կ'առնէր...

Ոչինչ ինձ այնքան չէր տանջում, որքան այն զգացմունքը, որ ամբողջ յիսուն օր ծոմ ու պաս էի պահել, առաւօտեան կէսօրին եւ երեկոյեան ժամ էի գնացել աղօթք էի արել, իսկ այս գիշեր, որ զատկի Ճրագալոյցի գիշերն էր, նոյնպէս պիտի եկեղեցի գնայի, պատարագ տեսնէի եւ “Սուրբ-Սուրբը„ երգելու ժամանակ պէտք է մօրս տուած կարմիր ձուն տաճարին ցոյց տայի, ու այնուհետեւ պասս բաց անէի, — այս բոլոր ջերմեռանդ ցանկութիւններս անկատար մնացին, բոլորից զրկուեցայ... Կրօնական զգացմունքը վառ էր իմ մէջ, իմ հոգին լի էր ջերմ հաւատքով։ Եկեղեցու ամեն մի ծէսը, ամեն մի արարողութիւնը, ամեն մի պաշտամունքը ինձ համար սրբազան նշանակութիւն ունէր, եւ այս պատճառով, մեծ ցաւ էի զգում, որ այն օր զուրկ մնացի եկեղեցուց։ Միւս կողմից, ինձ տանջում էր մի սարսափելի նախանձ. ես մեր դպրոցի առաջին աշակերտն էի, իսկ ինձանից հարիւր անգամ ստոր ընկերներս այն գիշեր պէտք է եկեղեցում “փոխ„ ասէին, “գիրք„ կարդային, շարականներ եր-

գէյին եւ իրանց ծնողներին ուրախացնէին, — իսկ իմ խեղճ մայրը պէտք է իր որդու ձայնը չը լսէր... Այս բոլոր մտածութիւնները այն աստիճան պաշարել էին ինձ, որ ես բոլորովին մոռացել էի վարժապետիս սպառնալի պատիժը, որ սպասում էր ինձ մի քանի ժամից յետոյ։ Զարմանալի՜ հակասութիւն։ Նա պիտի պատժէր ինձ, նա պիտի բարբարոսի նման նահատակէր ինձ, այն խօսքերից յետոյ, որ այսօր Աստուծոյ սուրբ սեղանից, իբրեւ քահանայ, պիտի աւետէր աշխարհին. “Քրիստոս յարեաւ ի մեռելոց, մահուամբ զմահ կոխեաց եւ յարութեամբն իւրով մեզ զկեանս պարգեւեաց,,։

Իսկ իմ բանտը,.. ես իմ անձնամոռացութեան մէջ դեռ նրան ուշադրութեան չէի առել։ Չը նայելով, որ ապրիլ ամիսն էր, բայց շոգերը սկսել էին արդէն։ Գոմը, ուր բանտարկուած էի ես, լիքն էր զանազան միջատներով, որոնք իրանց սուր խայթոցները խրում ու խրում էին մարմնիս մէջ։ Մի կողմից անասունների հոտած աղբի արտաշնչութիւնը խեղդում էր ինձ. միւս կողմից, սիրտս թուլանում էր քաղցածութիւնից։ Ողորմած Աստուած, ինչ անէի. փախչել չէի կարող. դուռը ամուր կերպով փակած էր. իսկ համբերել այն տարտարոսի մէջ, — մահուան չափ սպաննիչ էր...

Արեւը վաղուց արդէն մտել էր, խաւարը աւելի եւ աւելի թանձրանում էր գոմի մէջ։ Ես բոլորովին կատաղեցայ. ինձ տիրեց մի տեսակ խելագարութիւն. երկաթէ վանդակի մէջ նոր բռնուած գազանի նման, ես այս կողմ եւ այն կողմ էի թռչում, աշխատում էի մատներով քանդել պատերը, խորտակել սիւները, ծակել առաստաղը, կոտրել դուռը, լայնացնել նեղ լուսամուտները, որ մի հնար գտնեմ ազատուելու։ Այդ կռիւը տեւեց մի քանի ժամ, մինչեւ ես բոլորովին յոգնեցայ, թուլացայ եւ վէրընկայ յատակի վրայ։

Այդ միջոցին ինձ տիրեց երեւակայութեան բորբոքումը եւ հրէշաւոր ցնորքների խառնափնթորութիւնը: Տատիս հէքիաթների մէջ լսած եօթն գլխանի վիշապները, եղջիւրաւոր դեւերը, պոչաւոր սատանաները, ահագին խումբերով գալիս ու գնում էին աչքիս առջեւ: Մտածում էի, ահա խաւարը բոլորովին կը պատէ, եւ դրանք կը խեղդեն ինձ...

Թէ քանի՞ ժամ ես մնացի այդ տենդային դրութեան մէջ, — չը գիտեմ. միայն լսեցի, յանկարծ դուռը ճռաց: Ես ամբողջ մարմնով սարսափեցայ: Բայց սոսկումը անցաւ շուտով: Տեսնում եմ, ներս է մտնում Սօնան, մի այցելու հրեշտակի նման, ձեռքում բռնած իւղային ճրագը: Նա վեր բարձրացրեց ինձ ընկած տեղիցս, եւ նրա քնքոյշ ձայնը բոլորովին սթափեց ինձ:

— Փախի՛ր, Փարհատ, ասաց նա, — փախի՛ր, քանի հայրս տանը չէ...

Ես կամեցայ գրկել, համբուրել իմ ազատչին, բայց նա ոգիների նման աներեւոյթ եղաւ:

Ես դուրս եկայ իմ բանտից, ես թողեցի դպրոցը — իմ մանկութեան, իմ տանջանքների "դժոխքը", — եւ միւսանգամ չը վերադարձայ այնտեղ...



## Ը.

## ՀԻՆ ԸՆԿԵՐՆԵՐ

Ազատուելով իմ բանտից, ես վճռեցի միւս անգամ չը վերադառնալ այնտեղ, եւ ոչ մեր տունը գնացի, որովհետեւ գիտէի, որ մայրս առաւօտեան կրկին ինձ կը տանէր տէրտէրի մօտ, եւ յանձնելով նրան, կ'ասէր. — "Միսը քեզ, ոսկորն ինձ"... Բայց ես այժմ հասկացել էի այդ սարսափելի խօսքի նշանակութիւնը, որ մայրս առաջին անգամ ինձ դպրոց տալու ժամանակ ասաց վարժապետին։

Գիշեր էր, երբ ես դուրս եկայ բանտից. չը գիտէի, թէ ուր գնամ։ Յուսահատութիւնը մինչ այն աստիճան տիրել էր ինձ, որ մտածում էի. "էլ ուրիշ ճար չը կայ, գնամ գետը ընկնեմ, գուցէ ազատուեմ"...

Խորին վրդովմունքի մէջ ես անցայ մեր ամբողջ թաղը. փողոցների մէջ ոչ ոք չէր երեւում. դէպի ամեն կողմ տիրում էր խուլ լռութիւն։ Ամեն ընտանիք, եկեղեցուց տուն դառնալով, ուրախ, զուարթ, բոլորել էր զատկական սեղանի շուրջը եւ ընթրիք էր վայելում։ Բայց ես, որպէս փախստական, որպէս մի թշուառ դատապարտեալ, տեղ եւ օթեւան չունէի այս գիշեր։ Տներից բուրում էր խնկի եւ կնդրուկի անուշահոտութիւնը. ամբողջ օդը լցուած էր այդ սրբազան բուրմունքով։ Երբեմն իմ ականջին զարկում էին ուրախ բացականչութիւններ. "Քրիստոս յարեաւ ի մեռելոց"... Այո՛, յարեա՜ւ սիրոյ եւ խաղաղութեան Աստուածը... Բայց

ո՞րտեղ էր սէրը, ո՞րտեղ էր խաղաղութիւնը, ո՞րտեղ էր եղբայրութիւնը, — ես իմ կեանքի մէջ այդ բաները ոչ մի տեղ չէի տեսել…

Իմ խռովութիւնը այժմ հասնում էր մինչեւ խելագարութեան. ես այժմ ոչինչ չէի լսում, ոչինչ չէի զգում: Ինձ մինչեւ անգամ անհասկանալի էին քաղցրաձայն տաղերգութիւնները, որ հնչվում էին այս եւ այն տան լուսամուտներից: Կարծես, ամբողջ աշխարհը խլացել էր ինձ համար: Թէ ի՛նչպէս յայտնուեցայ գետի ափի մօտ, — մինչեւ այսօր չը գիտեմ, միայն յիշում եմ, երբ ես պատրաստվում էի ընկնել գետի գարնան հեղեղներից յորդացած ալիքների մէջ, ինձ կանգնեցրեց մի ձայն.

— Է՛յ, ի՞նչ ես անում:

Մի կողմից գիշերային մթութիւնը, միւս կողմից իմ խռովութիւնը, թոյլ չը տուին իսկոյն ճանաչել նրան, բայց ինձ երեւաց, որ ձայնը բոլորովին անծանօթ չէր:

— Փարհատ, չե՞ս ճանաչում ինձ…

— Ա՛խ, Կարօ, սիրելի՛ ընկեր, մի՞թէ դու ես… Չէ՛, չէ՛, դու Կարօն չես… — Որտեղի՞ց եկար… ո՞ւր էիր… Քեզ համար ասում էին…

Այսպէս, իմ շփոթութեան մէջ, սկսեցի հարցնել հին բարեկամիս, որ գրկելով ինձ, խուլ ձայնով պատասխանեց.

— Ես եմ… ես Կարօն եմ…

Իմ ուրախութեանը չափ չը կար. ես երեխայի նման քարշ ընկայ նրա պարանոցից, համբուրում էի կարօտալի աչքերը, համբուրում էի երեսը, ձեռքերը եւ երկար չէի բաժանվում նրանից: Ես պատմեցի այն աւուր անցքը, իմ բանտարկութիւնը, իմ փախուստը եւ յայտնեցի, թէ ի՛նչպիսի դիտաւորութիւն բերեց ինձ գետի ափի մօտ: Նա սկսեց ծիծաղել իմ միամտութեան վրայ, ասելով.

— Խելքդ կորցրե՞լ ես, ի՞նչ է։

— Ապա ի՞նչ անեմ, հարցրի ես։

— Դցի՛ր գետը այդ սատանայի կրծիկը։ — Պրծաւ, գնաց...

Նա ցոյց տուեց Դանիէլի գրքի վրայ, որը, չը գիտեմ, ինչպէս էր պատահել, առել էի ինձ հետ։ Ես առանց մտածելու, գիրքը նետեցի գետի մէջ, ինձ այնպէս երեւաց, թէ նրա հետ սրտիս բոլոր տանջանքները խորասուզուեցան սառն ալիքների մէջ...

— Դէ՛, շատ լաւ, ասաց նա։ — Հիմայ գնանք։

Ես հետեւեցի նրան, ամենեւին չը հարցնելով, թէ ուր է տանում ինձ։

Լուսնի եղջիւրը երեւեցաւ հորիզոնի ծայրից եւ գիշերի թանձր խաւարը փոքր ինչ պարզուեցաւ։ Օդը իր հովասուն սառնութեամբ բաւականին կազդուրեց իմ բորբոքուած գլուխը։ Ես սկսեցի ազատ շունչ քաշել։ Այժմ ինձ այնքան լաւ էի զգում, կարծես, ոչինչ չէր պատահել ինձ հետ։

Կարօն տասն եւ երկու տարի առաջ թողեց մեր դպրոցը եւ այնուհետեւ անյայտացաւ... Նա դուրս եկաւ մեր դպրոցից, առանց մի այբի կտոր անգամ իր հետ տանելու։ Իսկ այդ տասն եւ երկու տարուայ ընթացքում ո՜րքան փոխուել էր նա։ Լղարիկ, փոքրիկ, վատառողջ Կարօն այժմ աճել, հասունացել, հսկայական ձեւ էր ստացել։ Նրա համարձակ ընթացքը, յանդուգն կերպարանքը արտայայտում էին վեհութիւն, ուժ եւ անձնավստահութիւն։ Կարօն չորս տարով միայն մեծ էր ինձանից, բայց ես, թէեւ բաւական բարձր էի հասակով, դարձեալ իմ գլուխը հազիւ հասնում էր նրա ուսերին։ Իմ երեսի վրայ մազերի հետքեր անգամ չը կային, իսկ նրա վերեւի շրթունքը դեռ նոր սկսել էր սեւին տալ

թուխ ընչացքով։ Արեւից այրուած երեսը ստացել էր մուգ-դեղնապղնձի գոյն, բայց սեւ աչքերը դեռ վառվում էին նոյն բոցով, որպէս տեսել էի առաջ։ Ինձ երեւում էր, թէ այն գեղեցիկ աչքերը աւելի խոշորացել էին, եւ կարծես, մի կիսավայրենի բնաւորութիւն էին ստացել։

Ճանապարհին նա խիստ սակաւ խօսեց ինձ հետ. միանգամ միայն հարցրեց. «Մի՞թէ դեռ կենդանի է այն հրէշը»... Այդ հարցմունքը մեր վարժապետի, տէր Թօդիկի, մասին էր։ Երբ ես սկսեցի նկարագրել դպրոցի դրութիւնը, նա ինձ չէր լսում, իմ պատմութիւնը նրան չէր հետաքրքրում, կարծես, նա բոլորը գիտէր։ Եւ իրաւ, ի՞նչ էր փոխուել տասն եւ երկու տարւայ ընթացքում, որ նրան հետաքրքիր լինէր, — բոլորը նոյն էր...

Ինձ հանդիպելը, որ սկզբում այնքան ուրախութիւն ազդեց Կարօի մէջ, երեւում էր, յետոյ պատճառ տուեց խորին տխրութեան։ Նրա մռայլոտ լռութիւնն ինձ առիթ էր տալիս այսպէս կարծել։ Բայց ո՛չ, ես սխալվում էի, Կարօն նոյն ժամուն բոլորովին ուրիշ բանի վրայ էր մտածում եւ իմ ներկայութիւնը, կարծես թէ, նրան նկատելի չէր։ Նա մոռացաւ ինձ... Ինձ խիստ անախորժ թուեց այդ սառնասրտութիւնը նրա կողմից, եւ ես չը կարողանալով համբերել, հարցրի.

— Ո՞ւր ենք գնում։

— Ա՜խ, մոռացայ ասել... քեզ հիմայ կը տանեմ մի տեղ, ուր կը տեսնես քո երկու հին ընկերներին։ — Դու խո չե՞ս մոռացել Ասլանին եւ Սագօին։

— Ասլանին եւ Սագօին... բացականչեցի ես, չը կարողանալով զսպել իմ ուրախութիւնը, որ այնքան օտարոտի էր երեւում, համեմատելով իմ ուղեկցի սառնասրտութեան հետ։ — Որտե՞ղ են նրանք, շուտո՞վ կը տեսնեմ։

— Ճուտով, պատասխանեց նա, շարունակելով իր ընթացքը։

Գիշերը լուսնկայ էր։ Ես պարզ որոշում էի շրջապատող առարկաները. քաղաքը բաւական հեռու մնացել էր մեր ետեւից։ Խոսրովէից այգիները, գիշերային մառախուղի մէջ, երեւում էին ծածկուած արծաթի քօղով, որպէս թէ մրափում էին խորին անշարժութեամբ։ Խիստ ախորժ կերպով լսելի էր լինում առուակների խոխոջմունքը, որոնք հոսում էին կանաչ արտերի մօտով։ Օդը, տոգորուած բուսականների անուշահոտութեամբ, ծաւալվում էր իր թարմ, խոնաւ արտաշնչութեան մէջ։

Մենք շարունակում էինք ճանապարհը մի եւ նոյն ուղղութեամբ։ Ինձ տակաւին յայտնի չէր, թէ ուր էինք գնում։ Յանկարծ Կարօն ընդհատեց մեր մէջ տիրող լռութիւնը եւ դարձաւ դէպի ինձ այս խօսքերով.

— Փարհատ, գիտե՞ս ինչ կայ, ես չէի ցանկանայ, որ իմ ծանօթներից մէկը տեսնէր ինձ, բայց դէպքը այնպէս բերեց, որ մենք հանդիպեցինք մէկմէկու. ես յուսով եմ, որ մեր հանդիպումը կը մնայ որպէս գաղտնիք։

— Ես չե՞մ պիտի գիտենամ պատճառը։

— Այժմ ոչ, յետոյ ինքդ կը հասկանաս... մի քանի օրից յետոյ...

— Ես Զաքարիայի նման մունջ կը մնամ, երբ այդ ցանկանում ես դու։

— Հա, այդպէս, ինձ հարկաւոր է առ ժամանակ ծածուկ մնալ...

Նա կրկին խորասուզուեցաւ իր մտածութիւնների մէջ։

Կարօի զգուշացուցիչ պատուէրը չափազանց զարմացրեց ինձ։ Մի մարդ, որ ամբողջ տասն եւ երկու տարի հեռացել էր հայրենի երկրից, որին ամենքը կորած էին հա-

մարում, որը այժմ մի հրաշքով կրկին յայտնուել էր, ցանկանում էր դարձեալ ծածուկ մնալ, ցանկանում էր իր ծանօթներին, բարեկամներին չը հանդիպել։ Ի՞նչ էր գաղտնիքը, — այս հարցը սկսեց տանջել իմ միտքը։

Անցնելով աւելի քան կէս մղոն ճանապարհ, անապատի միջով, մենք հասանք այն տեղը, ուր անյիշելի ժամանակներից մնացել էին հին աւերակներ, որոնց մասին տատս պատմել էր ինձ այնքան շատ զարմանալի զրոյցներ։ Փլատակների մէջ մի մինարէթ միայն մնացել էր ամբողջ եւ լուսնեակի լուսով նա աւելի գեղեցիկ էր, քան թէ ցերեկով։ Նրա կապտագոյն մօզաիկները այժմ փայլում էին կախարդիչ հրապոյրներով։ Ինձ երեւում էր, որ այդ մինարէթը, որպէս մի վիթխարի հսկայ, փառաւոր կերպով վեր բարձրացած փլատակների միջից, լի ոխակալութեամբ՝ սպառնում էր ժամանակներին. "Դուք ոչնչացրիք իմ շրջակայքում բոլորը, ինչ որ ստեղծել էր արհեստը եւ ճարտարութիւնը, բայց ես կը մնամ, դեռ երկար կը մնամ եւ կը պատերազմեմ ձեզ հետ"...

Բայց ոչ, այսպիսի մտածութիւններ չէին զբաղեցնում իմ միտքը... այլ այն րոպէում, երբ հասանք աւերակների մօտ, ինձ տիրեց մի սարսափելի խռովութիւն։ Երեխայութիւնից լսածներս այն հին, խորհրդաւոր աւերակների մասին, մինչ այն աստիճան գրգռել էին իմ սնահաւատութիւնը, որ ես լոյս-ցերեկով երբէք չէի համարձակվում մօտենալ նրանց. իսկ այժմ, գիշերո՜վ, — դա զարհուրելի յանդգնութիւն էր։ Այդ պատճառով ես իմ մտքում խիստ դժգոհ մնացի Կարօից, երբ նկատեցի, որ ինձ այնտեղ է տանում։

Մօտենալով մինարէթին, Կարօն շուացրեց։ Մինարէթի միջից պատասխանեցին նոյն ձել եւ ձգական ձայնով։

Ես խորին անվստահութեամբ ոտք կոխեցի նրա շէմքի վրայ, երբ Կարօն հրաւիրեց ներս մտնել։

Մինարէթի ներսը լուսաւորուած էր փայտակոյտ խարոյկով, որ վառվում էր յատակի մէջտեղում, տարածելով իր կարմիր-ծիրանի լոյսը խուլ գմբէթների մէջ։ Կրակի մօտ երկու հոգի միս էին խորովում, որ շարած էր հրացանի սումբաների վրայ. Նրանցից ոչ այնքան հեռու դրած էր հաց եւ գինի։ Երեք հոգի եւս, մի կողմ քաշուած, պառկած էին մերկ գետնի վրայ։ Տեսնելով Կարօին, նրանք մօտեցան, եւ հեռանալով դէպի մինարէթի մթին կողմը, սկսեցին անլսելի ձայնով խօսել։ Այդ տեւեց աւելի քան տասն րոպէ։ Ես մնացի աննկատելի. ոչ ոք ինձ վրայ ուշադրութիւն չէր դարձնում։ Այդ բաւական վիրաւորեց իմ անձնասիրութիւնը։ Ես ոչինչ չը հասկացայ նրանց խօսակցութիւնից, միայն ինձ երեւաց, որ Կարօի հաղորդածը շատ ուրախալի պէտք է չը լինէր իմ ընկերներին, որովհետեւ իսկոյն նկատեցի նրանց դէմքի վրայ մի խորհրդաւոր տխրութիւն։ Ես կարծում էի, թէ խօսակցութիւնը իմ մասին էր։

Երբ վերջացրին, նրանցից գլորիկ հասակով, արագաշարժ մէկը դարձաւ դէպի ինձ, եւ շլվառվառուն աչքերը ուղղելով իմ երեսին, ասաց.

Օ — հօ... դու ո՞րտեղից դուրս ընկար։

Ինձ խիստ անախորժ երեւաց այդ կոպիտ հարցմունքը եւ ես վրդովմունքից այնքան շփոթուեցայ, որ ոչինչ չը գտայ պատասխանելու։ Կարօն, կարծես, այժմ մտաբերեց ինձ եւ իմ փոխարէն պատասխանեց.

— Չե՞ս ճանաչում, Սագօ։ Յետոյ դառնալով դէպի միւսներին ասաց. — Ախ, ես մոռացայ ներկայացնել, տեսէք, ինչ լաւ հիւր եմ բերել ձեզ համար։

Նա ցոյց տուեց իմ վրայ եւ նրա խօսքերից երեւաց, որ գաղտնի խօսակցութիւնը իմ մասին չէր։

— Ես չեմ ասի թէ ով է, շարունակեց Կարօն։ — Տեսնեմ, կը ճանաչէ՞ք։

— Ես նրան ձըւի միջում կը ճանաչէի, խօսեց դարձեալ շիլ աչքերով պատանին, մօտենալով ինձ — Փարհատը չէ՞։ — Քո տունը չը քանդուի, Փարհատ, ինչքան փոխուել ես դու, ինչ լաւ տղայ ես դարձել։

Այս լսելով, միւս ընկերը, որ հետաքրքրութեամբ նայում էր իմ վրայ, գրկեց ինձ, եւ ուրախանալով, ասաց.

— Ա՜խ, Փարհատն է, ինչպէս չը ճանաչեցի ես։

Կարօն ինձ ճանապարհին յայտնել էր, թէ ես կը տեսնեմ իմ երկու ընկերներին՝ Ասլանին եւ Սագօին, այդ պատճառով, դժուար չէր ճանաչել, որ ինձ այնքան սիրով գրկող պատանին Ասլանն էր, իսկ միւս շիլ աչքերովը — Սագօն։ Երկուսն էլ իմ հին աշակերտակիցներն էին, որոնք փախան մեր դպրոցից ճիշտ այն ժամանակ, երբ Կարօն անյայտացաւ։ Բայց մի բան, որ դժուարացրեց սկզբից ճանաչել նրանց, այն էր, որ թէ՛ Կարօն եւ թէ՛ միւս ընկերներս, բոլորն էլ հագուստները փոխած էին. նրանք չէին հագնուած այն ձեւով, որպէս առհասարակ հագնվում են Պարսկաստանի հայերը, այլ կրում էին մի տեսակ զգեստ, որ յատուկ է Մշու կամ Բաղէշի կողմերի լեռնաբնակ հայերին, որը շատ չէ զանազանվում քուրդ էշիրաթների հագուստից։

Սագօի իսկական անունը Սարգիս էր, բացի դրանից, մեր դպրոցում նրան կոչում էին "սատանայի եղունգ". այդ անունը ստացել էր նա իր չափազանց խորամանկութեան, ճարպկութիւնների եւ անհանգիստ բնաւորութեան պատճառով։

Ինձ երեւաց, թէ այժմ նա աւելի փոքրացել էր եւ համարեա գունդի ձեւ էր ստացել, թէեւ առաջ նոյնպէս բաւական կարճահասակ տղայ էր։ Նրա դէմքը բոլորովին կատուի կերպարանք էր կրում. անփոփոխ էին մնացել միայն շէկ աչքերը, այն վաղեմի գիւական աչքերը, որ միշտ արտայայտում էին եռանդ եւ մի առանձին կենդանութիւն։

Ալանը շատ չէր փոխուել. նոյն խաղաղ դէմքը իր բոլոր քնքշութեամբ, նոյն երկնագոյն հեզ աչքերը, հովանաւորուած խիտ թերթերունքներով, նոյն անմեղ ժպիտը, բոլորը նոյնն էր։ Միայն նրա շէկ մազերը այժմ աւելի մուգ գոյն էին ստացել եւ երեսի ճերմակ կաշին կորցրել էր իր վաղեմի սպիտակութիւնը։ Մարմնի կազմուածքը մնացել էր նոյնպէս նուրբ, որպէս առաջ, միայն այժմ փոքր ինչ կոլորուել էր նա եւ հասակը աւելի գեղեցիկ եւ վայելուչ ձեւ էր ստացել։

Ալանը միակ աշակերտն էր, որին ես շատ էի սիրում. նա միշտ բարի էր դէպի ինձ եւ քիչ չէր պատահում, որ ամբողջ ժամերով պարապվում էր ինձ հետ. Նա մեր դպրոցի ընդունակ եւ յառաջադէմ աշակերտներից մէկն էր։ Ի՞նչ պատճառով նա թողեց մեր դպրոցը, — ես հիմայ էլ չը գիտեմ, միայն նա թողեց մեծ ափսոսանքով, կարծես, մի բան կապած լինէր նրա սիրտը այն “դժոխքի„ հետ...

Մեր դպրոցում ես, Կարօն, Ալանը եւ Սագօն, այնպէս սերտ կերպով կապուած էինք միմեանց հետ, որ համարեա կազմում էինք մի անբաժան չորրորդութիւն։ Բայց երբ նրանք միասին անյայտացան մեր քաղաքից, ամենեւին չը յայտնեցին ինձ իրանց նպատակը, երեւի նրա համար, որ ինձ անյարմար գտան իրանց ընկերութեանը, որովհետեւ ես նրանցից հասակով շատ փոքր էի եւ բոլորովին անփորձ։ Այնուհետեւ նրանց մասին ամենեւին ստոյգ տեղեկութիւն-

Դառնալով դէպի Կ... գիւղը, մեր ճանապարհն ընկաւ կողմից, ուր գտնվում էր Ծերունի որսորդի որդեգիր՝ ...ի ագարակը։ Գիշերից բաւական անցել էր, երբ հասանք ...տեղ։ Տղերքը վճռեցին գիշերել Հասօի ագարակում։ ...տեղ Ծերունի որսորդի որդին շինել էր ճիւղերից հիւ-...ծ մի տաղաւար, որ խիստ յարմար օթեւան էր գարնան ...շերների համար։

— Մնացէք այստեղ ու քէփ արէք, ասաց Ծերունին։ ...տոյ աւելացրուց.

— Իմ հին ոսկորներն էլ չեն դիմանում գիշերուայ ...ոտին, ես կ'երթամ տուն ձեզ համար գինի ու հաց կ'ու-...արկեմ, խորովածի համար միս ունէք. իմ կենացն էլ կը ...մէք, խօսք չը կայ։ Հասօ, լաւ պատուիր հիւրերիդ։ — ...նանք, Մարօ։

Նրանք դեռ չէին բաժանուել մեզանից, երբ Մարօն մօտեցաւ ինձ եւ հազիւ լսելի ձայնով շշնջաց իմ ականջին.

— Դու կը մնաս, Փարհատ, այստեղ ցուրտ է լինում. ես տանից քեզ համար քնելու շորեր կ'ուղարկեմ։

Գիշերային մթութեան մէջ ոչ ոք չը նկատեց մեր խօսակցութիւնը, ես շնորհակալութիւն արեցի օրիորդին նրա բարեսրտութեան համար, եւ յայտնեցի, թէ ես փոքր ինչ սովորած եմ առանց ծածկոցի եւս քնել, որովհետեւ մեր տանը երբէք անկողին չեմ ունեցել, իմ վերմակը եղել է հօրս մաշուած վերարկուն, իսկ դօշակս՝ սառն հատակը։

— Դու ղօչաղ տղայ ես, Փարհատ, դու չես մնի, ասաց նա ուրախ ձայնով, եւ իր ձեռքով մի թեթեւ զարկ տալով իմ ուսին, փախաւ ինձանից, երբ երկրորդ անգամ խաւարի միջից լսելի եղաւ Ծերունի որսորդի ձայնը.

— Ո՞ւր ես, Մարօ, գնա՞նք, բալա։

Հասօն իսկոյն վառեց ահագին խարոյկ տաղաւարի առջեւ, չոր փայտերը բորբոքուեցան եւ լոյսը տարածուեցաւ հեռու մեր շրջակայքում։ Այն ժամանակ միայն կարողացայ լաւ տեսնել վաղեմի ընկերիս — Հասօի — վերանորոգուած կերպարանքը, որ վարժատան կեանքից յետոյ այնքան շատ փոփոխութիւնների էր ենթարկուել։ Մաշուած եւ ուժից ընկած "էշի փալանը„ — որպէս կոչում էին նրան — այժմ առողջ եւ խիստ ժիր տղայ էր դարձել։ Ահա ի՞նչ է նշանակում տէրտէրի այր — բնը եւ երկրագործութիւնը... առաջինը մաշեց, տրորեց նրա մանկութիւնը, առանց որ եւ իցէ մտաւոր սնունդ տալու նրա գլխին... իսկ վերջինը վերանորոգեց նրա սպառուած ուժերը եւ լեցրուց ծերունի հօր տունը հացով...

Իսկ այս կոշտ-կոպիտ մշակի մէջ չէին երեւում ոչ հօր բարեսրտութիւնը եւ ոչ քրոջ աշխուժութիւնը։ Հասօն եթէ կարելի է այսպէս կոչել, խստասիրտ եւ մռայլոտ արարածներից մէկն էր։ Բոլոր ժամանակը նա մի քանի անգամ միայն խօսեց ինձ հետ, եւ նրա խօսքերը խիստ կարճ եւ անգոյն էին։ Սագօն խիստ ճշգութեամբ նկատեց՝ թէ "Հասօն քաղցրախօս է միայն իր եզների հետ, որոնք նրա սրտը քաշում են"։ Այսուամենայնիւ, ես միշտ համակրութեամբ էի վարվում նրա հետ, որովհետեւ նա Մարօի եղբայրն էր...

Գիւղը շատ հեռու չէր ագարակից, մենք շուտով ստացանք ծերունի որսորդի խոստացած պաշարը՝ առատ գինի եւ հաց։ Ղարանի մսից պատրաստուած խորովածները արդէն եփուած էին, իսկոյն կազմուեցաւ ընթրիքի սեղանը։ Տղերքը չափազանց սոված լինելով, նստեցին ուտելու. ես հրաժարուեցայ սեղանից, յայտնելով, թէ ախորժակ չունիմ եւ ինձ ոչ այնքան առողջ եմ զգում։ Ու իրաւ, գլուխս

սաստիկ ցաւում էր, եւ ճանապարհի անախորժ անցքից յետոյ, ես գտնվում էի մի տենդային պրկման մէջ, որ գնալով, աւելի եւ աւելի վրդովում էր ինձ. քանի մտաբերում էի իմ անպատշաճ վարմունքը Ասլանի եւ Սագօի հետ։ Իսկ նրանք, կարծես թէ, մոռացել էին բոլորը, եւ ոչ մի կերպով, եւ ոչ մի թեթեւ ակնարկութեամբ անգամ չէին յիշեցնում անցածը, այլ ընդհակառակն, պատմում էին Հասօին՝ իմ եւ Մարօի կռիւը ղաբանի հետ, եւ գովաբանում էին մեր քաջասրտութիւնը։ Իսկ նրանց մի այսպիսի ներողամտութիւնը աւելի ծանր էր ինձ համար. ինձ բոլորովին վիրաւորական էր թւում վշտացնել մէկին, եւ առանց փոխադարձ բաւականութիւն տալու, վայելել նրա ներողամտութիւնը։ Այդ մի տեսակ ողորմութիւն էր, իսկ ողորմութիւն խնդրել ես չէի ուզում։

Ընթրիքի սեղանը կազմուել էր տաղաւարի մէջ, տղերքը հաւաքուել էին այնտեղ. ես պառկել էի տաղաւարից դուրս խոտերի վրայ, մի քանի քայլով միայն հեռու նրանցից, այնպէս որ, նրանց խօսակցութիւնը լսելի էր ինձ։

— Ճշմարի՞տ, հիւանդ է նա հարցրուց Հասօն։

Չէ՛, նա ուրիշ փորձանք ունի... պատասխանեց Սագօն եւ մօտեցաւ ինձ, գինով լիքը երկու բաժակներ ձեռին, եւ երգելով մի գեղեցիկ երգ։ Տաղաւարի միջից միաձայն հնչեցին ամբողջ խօրով նրա շարունակութիւնը։

Գիշերային լռութեան պահուն, երկրագործի մենաւոր տաղաւարի մէջ, մանկահասակ պատանիների ջերմ եւ անկեղծ սրտերից դուրս բղխած հնչիւնները այնքան հոգեշարժ եւ ոգեւորիչ էին, որ ներգործեցին իմ վրայ ընկերսիրութեան բոլոր սուրբ եւ կենագործող զօրութեամբ։ Իմ սիրտը լցուեց մի սրբազան խաղաղութեամբ եւ դադարեց մրրիկը, որ այնպէս սաստիկ կերպով խռովում էր ինձ։ Ես չը կարո-

ղացայ պահել իմ արտասուքը, եւ ընդունելով Սագօի ձեռքից բաժակը, միասին մօտեցանք խմբին։ Նրանք նոյնպէս մի — մի բաժակ ձեռքերին, կանգնած բոլորել էին սեղանի շուրջը։ Կարօն խիստ հանդարտ եւ ծանր եղանակով կարդաց մի փոքրիկ ճառ։ Բայց նրա խօսքերը, որոնք այնպէս պարզ եւ զօրեղ կերպով դուրս էին հոսում, մինչ այն աստիճան ներգործեցին իմ վրայ, որ ես մինչեւ այսօր չեմ մոռացել, թէեւ այն օրից անցել է քսան տարի, այո, քսան տարի, դա քիչ չէ . . .

“Սիրելի ընկերներ, մենք այն ազգի որդիքն ենք, որ զրկուելով հայրենական հողից, ցրուած է աշխարհի զանազան անկիւններում։ Մենք մի այնպիսի ժողովրդի ծնունդ ենք, որ ապրում է մի երկրում, ուր նրա խրճիթի օջախը շատ քիչ անգամ տաքանում է կրակով, որովհետեւ նա վառելիք չունի, որի տան մէջ լոյս չը կայ արեւը մտնելէն յետոյ, որովհետեւ նրա ճրագի իւղը վաղուց սպառուել է, որի որդիքը գիշերը քաղցած են քնում, որովհետեւ նա տանը հաց չունի։ Արեւն այրում է նրա զաւակների մարմինը, ցուրտը սառեցնում է, անձրեւը թրջում է, որովհետեւ նրանց հագուստներն այնքան քրքրուած են, որ չեն կարողանում պահպանել անբախտներին եղանակների խստութիւնից։

“Իսկ այդ ժողովուրդը ծոյլ չէ. նա անդադար աշխատում է, նա աշխատում է աւելի քան թէ կը ներէր մարդի ուժը։ Նրա կինը, նրա աղջիկը, նրա փոքրիկ երեխաներն անգամ գործակից են լինում գերդաստանի հօր աշխատութեանը։ Դուք տեսել էք կանայք, որոնք հնձում են արտերը, եւ իրանց հունձը, իրանք շալակած, բերում են կալը ծեծելու համար։ Դուք տեսել էք աղջիկներ, որոնք մեծ եռանդով մաքրում են մշակութեան ցանքերը աւելորդ

խոտաբոյսերից։ Դուք տեսել էք երեխաներ, որոնք արօրի լծերի վերայ նստած, քշում են եզները եւ օգնում են հօր գործին։

"Այո՛, այդ ժողովուրդը ծոյլ չէ, նա աշխատում է, նա ամբողջ տարին հանգստութիւն չունի, բայց դարձեալ ապրում է աղքատութեան մէջ, դա՛ռն, ցաւալի՛ աղքատութեան մէջ...

«Ի՞նչ է պատճառը։

"Հողը, որի վրայ նա ապրում է, թէ եւ մի ժամանակ իր նախնիքներին էր պատկանում, բայց այժմ դարձել է օտար աղաների սեփականութիւն։ Նա մշակում է օտարի հողը։ Իսկ աղայի պայմանները մշակի հետ այնքան ծանր են եւ անշահաւէտ, որ նրա երկրագործութեան բերքը եւ նրա վաստակը մեծ մասամբ վայելում է կալուածատէրը. մշակի համար մնում է այնքան, որով չէ կարողանում իւր կենսական ամենաանհրաժեշտ պիտոյքներին անգամ բաւականութիւն տալ։

"Գիւղացու կեցութեան միւս պայմաններն եւս դրա նման են. Նրա խրճիթը դրած է աղայի հողի վերայ, նրա համար հարկ է վճարում։ Նրա անասուններն արածում են աղայի արօտներում, նրանց համար հարկ է վճարում։ Ինքը գիւղացին, նրա ընտանիքը ապրում են աղայի հողի վրայ, այնտեղ ման են գալիս, նրա ջուրն են խմում, եւ իրանց գլուխներն պահպանելու համար հարկ են վճարում։ Մի խօսքով, գիւղացին բացի իր աշխատող ձեռքերից ուրիշ ոչինչ չունի, նրան շրջապատող ամբողջ բնութիւնը պատկանում է աղային, եւ նրա մէջ գործելու համար՝ նա պէտք է զոհէ իր աշխատութեան ամենամեծ մասը։

"Ահա՛, այդ է պատճառը, սիրելի ընկերներ, որ մեր ժողովուրդը, հայրենի հողի վրայ սնունդ չը գտնելով, գաղ-

թում է, անդադար գաղթում է եւ օտար երկիրներում բախտ է որոնում։ Բայց դառնում ե՞ն գաղթականները։ — Ո՛չ։ Դուք գիտէք, քանի հազարաւոր ընտանիքներ մնացել են առանց տղամարդերի, քանի հազարաւոր օջախների կրակը հանգել է, որովհետեւ տղամարդիկը մեռել են պանդխտութեան մէջ . . .

"Մենք, որ բոլորել ենք այս սեղանի շուրջը, դուրս ենք եկել նոյնպիսի ընտանիքներից. մեր մեծ մասը հայր, մայր, տուն, ազգականներ չունի, — բոլո՛րը կորած են անյայտութեան մէջ։ Ուրեմն, մեզ աւելի հասկանալի է, թէ ինչ է կրում այս երկրում մշակ մարդը, որովհետեւ մենք երեխայութիւնից փորձել ենք այն ամեն դառնութիւնները, որովհետեւ մեր ամեն մէկի սրտում դեռ մնացել են անբժշկելի այն վէրքերը, որ ստացել ենք բռնութեան կոպիտ ձեռքից։

"Ընտանիքը չը կարողացաւ մեզ, իւր որդիներին, այնպէս դաստիարակել, այնպիսի մի ուղղութիւն տալ, որ ձգէինք մեր վզից տաճկի լուծը, եւ ազատ մնայինք նրա հարստահարութիւններից։ Նա չը կարողացաւ մեզ սովորացնել կեանքի եւ ապրուստի հաստատ պայմանները, որ մեզ համար աշխատէինք, մեզ համար գործէինք, եւ մեր վաստակը օտարը չը խլէր մեր ձեռքից։ Ընտանիքը չը կարողացաւ այդ անել, որովհետեւ ինքը ստրկացած էր, եւ աւելի ցաւալին այն է, որ ստրկութիւնը դարձել էր նրա մէջ բնաւորութիւն։ Նա չէր բողոքում բռնութեան դէմ։ Նա մտածում էր՝ թէ Աստուած հէնց այսպէս ստեղծել էր նրան, թէ նա գոհ պէտք է լինի իր վիճակից, որովհետեւ ճակատագրից մի տառ անգամ փոխել կարող չէ . . .

"Դպրոցը, որի աշակերտներն ենք այստեղ կանգնածներս, աւելի հաստատեց մեր մէջ ստրկութիւնը. դպրոցը սպաննեց մեր մէջ ինքնագործունէութեան ուժերը։ Քահա-

նայ վարժապետը մտցրուց մեր մէջ կոյր հնազանդութիւն, — խոնարհուել եւ հպատակել ամեն իշխանութիւնների, որքան ծանր եւ անտանելի լինէր նրանց մեզ վերայ դրած լուծը։ Որովհետեւ ինքը վարժապետը նոյնպէս էր վարվում մեզ հետ։ Նա ասում էր մեզ՝ — թէ այս աշխարհի կեանքն ունայն եւ անցաւոր է. որքան ցաւալի լինի նա, որքան ձոխ լինի նա տանջանքներով, այնքան աւելի վարձատրութիւն կը գտնէ մարդ միւս կեանքում, որ սպասում է գերեզմանը մտնելուց յետոյ . . .

"Բայց գտնուեցաւ մի Յէրու, որ լսեց եւ դուրս բերեց մեզ դպրոցի բարոյապէս եւ մտաւորապէս փտեցնող մթնոլորտից։ Նա կանգնեցրուց մեզ ուղիղ ճանապարհի վրայ։ Նա սովրեցրուց մեզ կեանքի այն պայմանները, որոցմով կարող է մարդ հանգիստ եւ ապահով ապրել։ Նա սովորեցրուց մեզ օգնել եւ մեզ նման տնբախտներին, որ նրանց կեանքն էլ հանգիստ լինէր, որ նրանց ապրուստն էլ ապահոված լինէր։ — Եւ մենք նուիրեցինք մեզ ժողովուրդի բարօրութեան գործին . . .

«Խմենք, եղբայրներ, այն Տաշքու կենացը, որ մտցրուց մեր մէջ այդ ոգին, խմենք այն Գործի յաջողութեան համար, որը մեր սուրբ ուխտն է„ ։

Բաժակները զարկուեցան մէկ մէկու եւ խմեցին որսորդ Ավօի կենացը, բոլորը միաձայն գոչելով՝ "կեցցէ բարի գործը„ . . .



ԺԹ.

# ԵՐԱԶ

*Դարձեալ նոյն հին երգը, մտածում էի ես Կարօի ճառը լսելու միջոցին, նոյն երգը, որ նա երգում էր տասն եւ երկու տարի առաջ գիւղացիների եւ նրանց աղքատութեան մասին։*

*Կարօի եւ նրա կուսակիցների նպատակը թւում էր ինձ ոչ միայն անգործադրելի, այլ որպէս ցնորք, որպէս հիւանդոտ երեւակայութեան զառանցութիւն։ Մի՞թէ կարելի՞ է գիւղացուն հանգստութիւն տալ, ազատել նրան աղայի ճանկերից, որի մէջ կայ այնքան ուժ, որը վայելում է այնքան արտօնութիւններ։ Եւ ի՞նչով, ո՞րպէս պաշտպանել մշակի ապրուստը, երբ ոչ մի օրէնք չէր սահմանափակում աղայի կամայականութիւնը. երբ կառավարութեան ֆիրմաններն եւս մնում էին անզօր եւ չէին կարողանում աղաների բռնութեան առաջն առնել։ Ես գիտէի հարիւրաւոր օրինակներ, որ ժողովրդի բարօրութեան մասին շնորհած սուլթանի ֆիրմանները մնում էին անգործադրելի. խաները եւ բէկերը Բարձրագոյն Դրան հրովարտակը ստիպեցնում էին բերողին ծամել եւ կուլ տալ, կամ պատռելով եւ ծեծելով բերողին, այնպէս ճանապարհ էին դնում նրան, ասելով՝ "գնա, թագաւորիդ խաբար տուր„։ Եւ այսպիսի գազանները, որոնք ժողովրդի արիւնն էին ծծում, առանց խոնարհուելու որ եւ իցէ իշխանութեան, մնում էին միշտ անպատիժ։*

Այժմ Կարօն, ոգեւորուած մի մոլի եռանդով, իւր անձնազոհ ընկերների հետ, աշխատում էին յեղափոխել հին դրութիւնը, աշխատում էին փշրել ստրկութեան շղթաները, որոնք գարբնուել էին այնքան շատ դարերով։ Ու- ի՞նչով, ո՞րպէս . . .

Ինքը Կարօն խիստ ճիշդ նկատեց իր ճառի մէջ՝ թէ "ստրկութիւնը դարձել է ժողովրդի մէջ բնաւորութիւն„։ Միթէ հեշտ է փոխել բնաւորութիւնը, դարերով ամբոխի հոգու մէջ արմատացած բնաւորութիւնը։ Ի՞նչ օգուտ, երբ մի քանի եռանդոտ անձինք զարթել էին, հասկանում էին ժողովրդի չարն ու բարին, եւ աշխատում էին դարման տանել նրա խղճութիւններին, — երբ այդ մի քանի անձանց բոլոր ջանքը կորչելու, ոչնչանալու է ընդհանուր անտարբերութեան մէջ։ Նրանց բարբառը լինելու էր անապատում հնչող ձայն, եւ նրանց գործակցութիւնը, որպէս մի համերաշխութիւն գերեզմանատան բնակիչների հետ, չէր հասնելու որ եւ իցէ օգտաւէտ վախճանի։ Կարօն ինքը շատ լաւ գիտէր այդ, ամբոխը գտնվում էր այն վիճակի մէջ, ինչ վիճակում լինում են խելագարները կամ հարբածները. նրանք ընկնում են ցեխերի մէջ եւ ամենեւին չեն նկատում իրանց կեղտոտութիւնը, նրանք իրանց գլուխը պատերին են զարկում եւ ամենեւին ցաւ չեն զգում, թէեւ ճակատից արիւն էր հոսում. Նրանք փողոցներում թաւալուած ժամանակ՝ ամեն անցնող երեխան ոտքով խփում է, թքում է նրանց վրայ. բայց նրանք հանգիստ պառկած են եւ վիրաւորանք չեն զգում։ Կարօն գիտէր այդ բոլորը։ Նա գիտէր, որ ժողովուրդը տանջվում էր նիւթապէս, ուտելու հաց չունէր եւ հագնելու հագուստ, բայց համբերում էր։ Նա գիտէր, որ ժողովուրդը տանջվում էր բարոյապէս. շատ անգամ նրա կինը, աղջիկը, տղան զոհվում էին աղայի կրքերին, բայց նա համ-

բերում էր . . . Համբերում էր, որովհետեւ իր թշուառութիւնը, իր անպատուութիւնը չէր համարում կարգից դուրս բաներ, այլ մտածում էր՝ թէ այլ կերպ լինել կարող չէր, թէ ինքը հպատակ է, թէ աղան ինչ որ ուզէ, այն պէտք է անէ . . .

Ե՛կ, դու փոխի՛ր դարեւոր նախապաշարմունքը։ Ի՞նչ կարող ես անել, երբ ամբոխը ինքը չէ բողոքում իր թշուառութիւնների համար, երբ ամեն անբախտութիւններ տանում է նա համբերութեամբ, եւ, — որպէս Կարօն յիշեց իր ճառի մէջ, — տալիս է նրանց մի վերին եւ Աստուծոյ նախասահմանութեամբ կարգադրած օրէնքի նշանակութիւն։ Ի՞նչ պէտք է անես . . .

Մի՞թէ այսպէ՞ս էին իմ դատողութիւններն այն ժամանակ. միթէ այդպէ՞ս էի մտածում ես . . . Ո՛չ։ Ես ինքս շատ հեռու չէի նոյն նախապաշարմունքներից, որոնք տիրել էին ժողովրդին, որովհետեւ նրա հաւատարիմ զաւակն էի։ Ես միայն ծիծաղում էի Կարօի ցնորքների վրայ, որպէս տասն եւ երկու տարի առաջ, երբ նա դեռ նոր էր փախել Հայր Թօդիկի ուսումնարանից եւ աշակերտում էր մի նոր դպրոցի — որսորդ Ավօի — վարդապետութեանը, վարդապետութեանը այն խորհրդաւոր մարդու, որի ծագումը, հայրենիքը յայտնի չէր, որ ծածկուած էր հասարակ որսորդի դիմակով, որը ներշնչեց կրակոտ պատանիների մէջ նոր հոգի եւ նոր միտք . . .

Ընթրիքը թէեւ վերջացաւ խիստ զուարճալի կերպով, բայց ես ամենեւին ուրախ լինել չը կարողացայ, այդ պատճառով շատ գոհ եղայ, երբ տղերքը շուտով պառկեցին քնելու։ Բայց ես քնել չը կարողացայ, եւ դուրս գալով տաղաւարից, երկար թափառում էի գիշերային մթութեան մէջ։ Կարծես, հազար ու մէկ սատանաներ պտոյտ էին գալիս

իմ գլխում․ երբեմն մտածում էի՝ գնամ Ալանին ու Սագօին խեղդեմ իրանց քնած տեղում։ Յետոյ ինձ ու ինձ փօշմանում էի, ասելով «չէ՞ որ նրանք մոռացան բոլորը, նրանք ներեցին ինձ»։ Բայց ես կարո՞ղ էի ներել նրանց, որ այնպէս անվայելուչ կերպով խօսում էին Մարօի մասին...
Այսպիսի խառն մտածմունքներով լցուած էր իմ յիմար գլուխը, երբ ես կրկին դարձայ տաղաւարի մօտ եւ պառկեցի նրանցից փոքր ինչ հեռու խոտերի վրայ։

Յետ ընկած լուսինը կամաց-կամաց վեր բարձրացաւ սարի ետեւից եւ լեռները լցուեցան արծաթի լուսով։ Գեղեցիկ տեսարանը ամենեւին չազդեց իմ վրայ։ Իմ գլուխը դեռ լիքն էր սեւ մտածմունքներով․ իմ սիրտը դեռ անհանգիստ խռովութեան մէջ էր։ Չը գիտեմ, ի՞նչու այնպէս վրդովուած էի ես․ չը գիտեմ ի՞նչ էր, որ այնպէս տանջում էր ինձ։ Միայն այսքանն եմ յիշում, որ շուտով իմ աչքերը լցուեցան ջերմ արտասուքով, ես սկսեցի լաց լինել, երկար լաց լինել...

Գիշերն ես անցուցի տենդային ջերմութեան մէջ։ Առաւօտեան լուսաբացի պահուն ինձ տիրեց մի թմրութիւն․ այն ժամանակ եւս խառն երազները սկսեցին անհանգիստ անել։ Ողորմած Աստուած, ի՞նչեր չէին գնում եւ գալիս իմ աչքերի առջեւ, — սատանաներ, հրեշտակներ, դժոխք, արքայութիւն, — մի խօսքով, հազարաւոր տխուր եւ ուրախալի պատկերներ մինը միւսից յետոյ կամ զուարճացնում էին ինձ եւ կամ սարսափեցնում... Բայց երբ զարթեցայ, բոլորը մոռացայ, մի երազ միայն մնացել էր իմ մտքում, նրան յիշում եմ եւ այսօր։

Ինձ երեւում էր, թէ Սօլայի հեղեղատը յորդացել էր, որպէս ամեն տարի գարնան ժամանակ բարձրանում էին նրա ջրերը։ Իսկ այժմ շատ էր բազմացել ջուրը, խիստ շատ։

*Կատաղած գետը գոռում էր, փրփրում էր, և հսկայական վիշապի նման սարսափելի պտոյտներ էր գործում։ Նրա պղտոր յորձանքները տանում էին իրանց հետ ամենը, ինչ որ հանդիպում էր։ Ես տեսնում էի, թէ ինչպէս ալիքների մէջ լող էին տալիս տնային կարասիք, տեսնում էի խեղդուած մարդերի դիակներ, այլ և երեխաներ, կապած օրօրոցների մէջ... մտածում էի՝ որքա՞ն տներ պէտք է քանդած լինի, որքա՞ն ընտանիքներ պէտք է ոչնչացրած լինի սարսափելի հեղեղատը... Անբախտ զոհերն երբեմն բարձրանում էին ալիքների հետ. երբեմն կորչում էին նրա պտոյտների մէջ. երբեմն մօտենում էին գետի եզերքին. — ձեռքդ մեկնիր և ահա կ'ազատես, մտածում էի ես։*

*Ես տեսնում էի՝ Կարօին, Ասլանին և Սաքօին, նրանք այնպէս փոքրիկներ էին, որպէս առաջ, երբ դեռ երեխայ էին, երբ հեղեղատի ջուրը նստելու ժամանակը գնում էինք միասին նրա ափերից հաւաքում էինք զանազան հնութիւններ, որոնց նա բերել էր իր հետ, քանդելով Քօհնա-շհարի աւերակները։ Իսկ այն երազ չէր։*

*Իսկ այժմ տեսնում էի ընկերներիս նոյն հասակում, որոնք ցոյց էին տալիս խեղդուող մարդիկներին և ասում էին ինձ՝ "տես, Փարհատ, ի՞նչպէս տարվում են այդ անբախտները հոսանքի հետ, գնանք, ազատենք նրանց„։*

*Երբ աչքս կրկին դարձրի դէպի գետը, ալիքների մէջ տեսայ մի քանի ինձ ծանօթ երեսներ՝ — Մարիամին, Մագթաղին, իմ հօրը, իմ մօրը, — իմ աչքերի առջև մթնեցաւ, վազեցի դէպի ափը, որ օգնութիւն հասցնեմ։ Յանկարծ գետի խարխուլ եզրը փուլ եկաւ, ես գլորուեցայ ցած... Ինչպէս մի թեթև փետուր ես տարվում էի պղտոր հոսանքի հետ... կատաղի ալիքները շատ անգամ խորասոյզ էին անում ինձ դէպի յատակը, շատ անգամ*

դուրս հանում... կրկին տեսնում էի սիրելի պատկերները սարսափած եւ գունաթափ երեսներով... Աշխատում էի ափին մօտենալ, հնարք չէր լինում, իմ թեւքերի ուժը հետզհետէ թուլանում էր, եւ ես խեղդուելու մօտ էի... Ես կանչում էի Կարօին, Ալանին եւ Սաքօին, որ նրանք ազատեն ինձ. բայց երբ աչքս դարձրի դէպի հոսանքի ընթացքը, տեսայ, նրանք էլ տարուբերվում էին ալիքների մէջ...

Յանկարծ յայտնուեցան երկու կերպարանքներ, որոնք ձեռքները մեկնած, աշխատում էին ազատել ինձ, նրանցից մէկը տխուր էր դէմքով եւ աչքերումը արտասուք կար, միւսն ուրախ եւ պայծառ էր երեսով եւ հրեղէն աչքեր ունէր: Ինձ երեւաց թէ նրանք երկու հրեշտակներ էին, որոնք իջան երկնքից. իսկ յետոյ ճանաչեցի՝ մէկը Սօնան էր, միւսը՝ Մարօն. յետոյ, երբ ես թաղուեցայ ջրի տակ եւ միւսանգամ դուրս չեկայ...

Երբ ես զարթեցայ Կարօն կանգնած էր իմ մօտ.

— Դու հիւանդ ես, Փարհատ, ասաց նա խռոված կերպով: — Քո երեսը մեռելի գոյն է ստացել, դու այնպէս սարսափելի բաներ էիր խօսում քնիդ մէջ...

Ես պատասխանեցի, թէ քունս անհանգիստ էր, եւ ես ոչ բոլորովին առողջ եմ զգում ինձ. գլուխս սաստիկ ցաւում է, անդամներս ջարդվում են, որպէս թէ ամբողջ մարմինս սանդի մէջ ծեծած լինէին։

Կարօն յայտնեց ինձ, թէ իրանք պէտք է գնան Բարթուղիմէոս առաքելոյ վանքը “մի գործի„ համար եւ կը վերադառնան միւս օրը երեկոյեան, եւ խորհուրդ տուեց ինձ մնալ ծերունի որսորդի տանը, աւելացնելով, թէ գիշերը տաղաւարից դուրս բացօթեայ քնելով, մրսած կը լինեմ,

պատուիրեց տաք բան խմել եւ քրտնել, որով շուտով կ'անցնէր տկարութիւնը։

Երբ նրանք նստեցին ձիաները, կամենում էին հեռանալ, Սագօն մօտեցաւ ինձ, եւ խուլ ձայնով ասաց․

— Գնա՛ տուն, բախտաւոր, գեղեցիկ Մարօն կը բժշկէ քեզ…



## Ի.

## ԱՇԽԱՏԱՆՔ ԵՒ ՀՈՂ

Արեւը նոր սկսեց ծագել։

Հասօն տաղաւարում չէր. տղերքը գնալուց յետոյ ես մենակ մնացի այնտեղ։ Ի՞նչ անեմ, ո՞ւր գնամ։ Գնամ տուն, հին բարեկամիս տունը, այնտեղ “Մարօն կը բժշկէ ինձ„... Չէ, չեմ գնայ, Մարօն թող չը տեսնէ, որ իմ առողջութիւնը վատ է, նա փափուկ սիրտ ունի, նա լաց կը լինի... Չէ՛, գնամ մի փոքր ման գալու, գուցէ վաղորդեան օդը կը կազդուրէ ինձ։

Առաւօտեան ցօղը դեռ չէր բարձրացել խոտերից, եւ արեգակի առաջին ճառագայթները խաղալով մարգարտեայ կաթիլների հետ, արտափայլում էին ծիածանի գոյներով։ Օդը տոգորուած փափուկ խոնաւութեամբ, հովացնում էր իմ բորբոքուած երեսը։ Հեռաւոր լեռները դեռ պատած էին ճերմակ ու թափանցիկ մշուշով։

Իմ թուլացած անդամները բաւականին զուարթացան վաղորդեան հովութիւնից, բայց տակաւին սիրտս խռովութեան մէջ էր։ Ես գնում էի լուռ եւ մտախոհ կերպով. ո՞ւր էի գնում, ինքս չէի իմանում, միայն մի բան ինձ քաշում էր հեռու մարդկային բնակութիւնից։ Գիշերուայ երազն ամենեւին դուրս չէր գալիս իմ մտքից. նոյն զարհուրելի տեսարանները ներկայանում էին իմ երեւակայութեան

մէջ։ Ի՞նչ էր նշանակում այն սարսափելի հեղեղատը։ Ի՞նչ էր նշանակում պղտոր ալիքների այնպէս փրփրելով, գոռալով, կատաղի հոսանքը, որ տանում էր իր հետ այնքան անբախտ զոհեր, որոնց թւում գտնվում էին եւ այն անձինքը, որոնք այնքան մօտ եւ սիրելի էին իմ սրտին... Վերջապէս ի՞նչ էր նշանակում Սօնայի եւ Մարօի իմ օգնութեանը հասնելը. մի՞թէ նրանց ձեռքումն էր իմ փրկութիւնը, մի՞թէ նրանք կարողացան ազատել ինձ։ — Ոչ, մինչեւ նրանց հասնելը, ես արդէն ջրի խորքումն էի, այն սառն եւ թաց գերեզմանի մէջ թաղուած...

Մի՞թէ մեր կեանքը մի այսպիսի երազ չէր... մի՞թէ մեզ եւս իր հետ չէր տանում աշխարհային հոսանքը իր կատաղի ալեկոծութեան մէջ...

Ես գնում էի մի հովիտի միջով, ուր մշակուած դաշտերը խոստանում էին առատ հունձք. մի տեղ դեռ նոր էին վարում հողը, մի տեղ ցանում էին, միւս տեղ արածացնում էին ոչխարների հօտերը, մի խօսքով, որ կողմ եւ նայում էի, եփ էր գալիս աշխատութիւն, ամէն ինչ շարժողութեան մէջ էր, ամէն տեղ երեւում էր կեանք եւ գործունէութիւն։ Այո, "ծոյլ չէ այդ ժողովուրդը"... յիշեցի Կարօի խօսքերը, եւ մի այդպիսի ժողովուրդը անբախտ է...

Յանկարծ իմ ականջին զարկեց մի երգի ձայն, նա խիստ քաղցր եղանակով հնչվում էր առաւօտեան հովութեան մէջ, ես պարզ որոշում էի հետեւեալ խօսքերը.

"Ահա ծագեց կարմիր արեւ,
Տաք եւ պայծառ է օրը,
"Դէ՛, քաշեցէ՛ք, սիրուն եզներ,
Յառա՜ջ տարէ՛ք արօրը։

«Վարը վարենք, ակօս փորենք,
Խո՜ր ակօսներ հողի մէջ.
«Սերմը ցանենք, որ հունձ հնձենք,
Ցորեան դիզենք կալի մէջ։
«Կը գայ ձմեռ — մենք վախ չունենք —
Ուրախ կ'անցնի մեր օրը,
«Ուտելու միշտ պաշար ունենք,
Լի եւ կուշտ է մեր փորը։
«Դէ՛, քաշեցէք, սիրուն եզներ,
Շուտով վարենք արտերը,
«Թող չասեն մեր գիւղեցիք՝
Ծոյլ են Հասօի եզները»։

Երգողը Հասօն էր, որ փոքր ինչ հեռու վարում էր իր արտը։ Ես մօտեցայ նրան եւ տեղային սովորութեան յարմար ասեցի.

— Բարի յաջողութիւն։

Նա ընդունեց իմ ողջոյնը եւ շարունակեց իր գործը։ Ես հարցրի՝ արդեօք նրա երգի պարունակութիւնը համապատասխանում էր իր դրութեանը, նա ձմեռը հաց կ'ունենա՞ր ուտելու, եւ իր անասունները կարո՞ղ էին կուշտ ապրել։ Նա պատասխանեց, թէ մենք միշտ երգում ենք այն, ինչ որ իսկապէս չունենք կամ բնաւ չենք ունեցել... եւ աւելացրուց՝ թէ լաւ է աշխատել առանց վաստակի, քան թէ անգործ մնալ. անգործունէութիւնը մեռելներին է պատկանում։

— Այս արտը աղայի մուլք չէ, ասաց նա։

— Բա՛ ո՞ւմն է։

Նա ասաց, թէ իր հայրը գնել էր այդ հողը մի քիւրդ բէկի այրի կնոջից, որը փողի սաստիկ կարօտութեան մէջ լինելով, ստիպուեցաւ վաճառել իր կալուածքը, եւ իբրեւ

*իրանց սեպհականութիւն, նա ազատ էր աղայական տուրքերից։ Իմ կարծիքին, թէ լաւ կը լինէր, որ ամեն գիւղացի իր սեպհական հողն ունենար, Հասօն պատասխանեց՝ — լաւ կը լինէր, եթէ թողնէին... եւ աւելացրուց, — գիւղացիք փող չունեն հող գնելու համար, եւ եթէ գնէին եւս, աղաները նրանց հետ թշնամանում են, սկսում են նեղացնել, կամ ջուր չեն տալիս, կամ սովորացնում են իրանց մարդիկներին նրանց ցանքերը փչացնում են, կալը կամ հունձքի դէզերը հրդեհում են, վերջապէս, ամեն միջոցներ գործ են դնում, որ գիւղացին չը վստահանայ կալուածատէր լինելու, այլ միշտ մնայ այն կարծիքի մէջ, թէ ինքը առանց աղայի օգնութեան, առանց նորա հովանաւորութեան, որ եւ իցէ միջոցով ապրուստ ճարել կարող չէ։*

*— Քո բարի աչքերով տեսնում ես, շարունակեց նա, — հօրէս գօտկումս խրած են մի ջուխտ թափանչայ. այնտեղ լծան վրայ կապած է թուանգը. ինչու համար են դրանք. ես այստեղ վար եմ վարում. ում հետ կռիւ ունեմ. բայց էլի հարկաւոր են. թշնամին ամեն ժամ մեր վզի ետեւէն կանգնած է։ Մէկ էլ տեսար, երկու քրդի ձիաւոր մզրախները ձեռներին, լօ — լօ կանչելով, ձորի միջէն դուրս եկան, եզները կ'արձակեն եւ կը տանեն. աչքերդ բաց-բաց պէտք է կանգնես եւ մտիկ տաս. շատ-շատ կը սկսես քո գլուխը թակել, որ տարան սիրուն եզներդ, էգուց արօրը վարող չես ունենայ... Բայց քանի սրանք իմ մօտ են, — նա ձեռքը դրեց ատրճանակների վրայ — ինքը սատանան չի կարայ մօտենալ Հասօի եզներին...*

*— Մի եւ նոյնը կարող է պատահել եւ այն մշակների հետ, որոնք վարում են աղայի արտերը։*

*— Չէ, աղաներն իրանք են թալանում իրանց բանուորներին, բայց թող չեն տալիս ուրիշները մտենան իրանց խո-*

նարհ ծառաներին։ Ամէն գազան իր որսը պահպանում է մէկէլ գազաններից։

— Այդ մի եւ նոյն է, թէ իրանք եւ թէ օտարները, երկու դէպքում եւս մշակը կողոպտւում է։

— Մի եւ նոյնը չէ։ Դու խօ գիտես այն հաւի առակը, որ ամէն օր մի-մի ոսկի հաւկիթ էր ածում իր տիրոջ համար։ Մշակը մի այնպիսի հաւ է աղայի համար, աղան մէկ անգամից չէ սպաննում հաւին (մշակին) որ նրա փորից խազինայ (գանձ) դուրս բերէ. նա թողնում է, որ նա ապրէ, որ ոսկի հաւկիթը շարունակ ստանայ։ Բայց աւազակները նրա կեանքին չեն ափսոսում, ուզում են մէկ անգամից հարստանալ եւ սպաննում են...։

— Քանի՞ օրումը կը վերջացնես այս արտի վարելը, հարցրի ես, կամենալով փոխել խօսակցութիւնը, որ խիստ տխուր տպաւորութիւն գործեց իմ վրայ, երբ մտածում էի, թէ ի՞նչով է ապահովւած երկրագործը, որ միշտ իր զէնքով պէտք է պահպանէ իր անասունները եւ իր մշակութեան բերքը աւազակների յարձակմունքներից։ Բայց մի՞թէ իւրաքանչիւր մշակ կարող է որսորդ Ավօի որդին լինել եւ զէնք բանեցնել... Ի՞նչ կարող է լինել այն խեղճերի դրութիւնը, որոնք մի հասարակ դանակ եւս չունեն իրանց գրպանում։

Հասօն չը լսեց իմ հարցմունքը եւ ես միւսանգամ կրկնեցի, թէ քանի՞ օրում նա կարող է վարել իր արտը։

— Եթէ Տէրը յաջողութիւն կը տայ, ի՞նչ մեծ բան է նրա վարելը։ — Դէպի ա՛ջ, Մարալ, դու այսօր հէնց թէ խելքումդ չես, այս ասելով նա բզեց կարմիր եզան կողքը։ — Տե՛ս «Գութանը» այնտեղ էր կանգնած, — նա իր վարոցով ցոյց տուեց երկինքը, — խատակ այնտեղ, երբ ես լծեցի արօրը. հիմայ Աստուծու օգնութիւնով, տեսնո՞ւմ ես որքան վարել եմ։ Վաղուայ գործը օրհնած է, թէ չէ, երբ արեւը

բարձրացաւ, այն ժամանակ ոչ մեղաւոր մարդուն, այլ անբան անասուններին էլ մեղք է բանացնելը, խստակ էրում է արեւը, չես կարող շունչ քաշել: — Դէպի կորդ, Ջէյրան, ի՞նչ ես հոգիդ տալիս, — այս անգամին նա բզեց մոխրագոյն եզան կողքը:

Կարծես նրա եզները — Մարալը եւ Ջէյրանը — հասկանում էին իրանց տիրոջ նկատողութիւնները եւ այնպէս խելացի կերպով տանում էին գործը: Բայց Հասօն տեսնելով, ես երկար զբաղեցնում եմ նրան իմ հարցափորձով, ուզեց ինձ որպէս ասում են "իր գլխից ռադ անել„, եւ այս մտքով ասաց.

— Դու սիրում ես, Փարհատ, առաւօտեան խիար (վարունգ) ուտելը, դա սրտի համար լաւ է, գնա, այն խոտերի մէջ մի քանի հատ թագցրել եմ, որ սառն մնան, կտրէ ու կեր. թէ դանակ չունես, ես կըտամ:

Ես շնորհակալութիւն արեցի, յայտնելով, թէ սովորութիւն չունեմ անօթի որ եւ իցէ միրգ ուտել, եւ մնաք բարեաւ ասելով, հեռացայ աշխատասէր մշակից:

Կրկին զարթեցան իմ մէջ նոր եւ նոր մտածմունքներ, երբ ես յիշեցի Հասօի խօսքը՝ "լաւ է աշխատել առանց վաստակի, քան թէ անգործ մնալ. անգործունէութիւնը մեռելներին է պատկանում„: Ես այն ժամանակ չը կարողացայ հասկանալ, իսկ այժմ հասկանում եմ այս խօսքերի իմաստը: Աշխատութիւնը, որքան եւ անշահաւէտ լինէր գործողի համար, վաղ թէ ուշ կարող էր վարձատրութիւն գտնել, օգուտ բերել, նա ունէր իր փառաւոր ապագան: Իսկ անգործունէութիւնը, իրաւ որ, մեռելութիւն է, նրա սկիզբը եւ վախճանը մահ է: Որքան եւ իզուր թափուած լինէր մշակի քրտինքը, որքան եւ յուսահատական լինէր նրա դրութիւնը, դարձեալ նա կենդանի մարդ է, նա գործում է, նա

պատերազմում է իր գոյութիւնը ոչնչացնող դժուարութիւնների հետ. Նրա մէջ մեռած չէ ինքնապահպանութեան զօրութիւնը։ Եւ այս՝ կեանքի եւ մահու կռուի մէջ՝ նա իրան պատրաստում է մի օրուայ համար, երբ կը տիրեն իրաւունքը եւ արդարութիւնը, երբ կ'ազատուի ա ղ ա ն ե ր ի հարստահարութիւնից։ Այն ժամանակ կը գայ մշակ մարդու արքայութիւնը, այն մարդու, որ գործ ունի արդար եւ հաւատարիմ բնութեան հետ, որ չէ մտածում իր նման մարդերի քրտինքից իր համար ապրուստ քամել…

Այո, այս ճշմարտութիւնն անհասկանալի էր ինձ այն ժամանակ, ես, ես միայն էի անգործ արարածը այն ընդարձակ տարածութեան մէջ, ուր ամեն մարդ զբաղուած էր իր աշխատանքով։ Ո՞վ գցեց ինձ այն մոլութեան մէջ, ո՞վ սպաննեց իմ մէջ աշխատասիրութեան եռանդը։ Ես մտաբերեցի հայր Թօդիկի վարդապետութիւնը, որ նա մեկնում էր իր աշակերտներին իր բուն բառացի իմաստով, "մարդը պէտք է երկնքի թռչունների նման ապրէ, որոնք ոչ վարում են, ոչ ցանում են եւ ոչ հնձում են, բայց միշտ կուշտ են, եւ Աստուած հասցնում է նրանց կերակուրը„։ Այդ խօսքերը նա իր գլխից չէր դուրս տալիս, դրանք գրքից առած խօսքեր էին։ Հիմնուելով յիշեալ բնաբանի վրայ, տէր-հայրը ընդարձակում էր այն միտքը, "թէ պէտք չէ հոգ տանել այս աշխարհի կեանքի համար, նա ունայն եւ անցաւոր է, թէ իւրաքանչիւր մարդու համար Աստուած նշանակել է նրա օրական պարէնը (ապրուստը) մէկին շատ, մէկին քիչ, նոյնը կը հասցնէ նա անընդհատ կերպով եւ չի թողնի իր արարածը քաղցած մեռնի։ Մարդից, իրանից, ոչինչ կախուած չէ, որքան եւ ջանք գործ դնէր, դարձեալ նա չէ կարող մի մազաչափ աւելացնել, կամ պակասեցնել ապրուստի այն չափից, որ նշանակել է նրա համար Աստուած։

Քահանայի վարդապետութիւնը եւ Հասօի խօսքը ծնուցին իմ մէջ երկու միմեանց հակառակ գաղափարներ. մէկը՝ անհոգութիւն եւ յոյս դնել Աստուծոյ նախասահմանութեան վրայ. միւսը՝ գործունէութիւն եւ յոյս դնել իր աշխատող ձեռքերի վրայ: Որն էր դրանցից ճշմարիտը. ես որոշել կարող չէի, միայն մտածում էի՝ թէ քահանայի ասածը պէտք է որ ուղիղ լինի, որովհետեւ տեսնում էի՝ մարդիկ այնքան աշխատում էին, կաշուց դուրս էին գալիս, դարձեալ մնում էին աղքատ: Երեւի, ասում էի ես, նրանց ապրուստը այնպէս քիչ է նշանակած, որ նրանք երբէք չեն կարող լինել ապահոված: Իսկ աղան կը մնայ միշտ աղայ, որովհետեւ նա ոչ վարում է, ոչ ցանում է, ոչ հնձում է, եւ նրա սեղանը միշտ լի է եւ ճոխ...

Հիմնուելով վերոյիշեալ մտախոհութիւնների վրայ, Կարօի եւ իր ընկերների նպատակը ինձ երեւում էր բոլորովին երեւակայական, եւ ես խիստ ափսոսում էի, որ նրանք ընկած էին այնպիսի անելանելի մոլորութեանց մէջ...

Ես միայն չէի, որ այսպէս էի մտածում, բոլոր ժողովուրդը այսպէս էր մտածում, որովհետեւ նրանք նոյնպիսի տէր Թօդիկների աշակերտներ էին որպէս ես:

Եւ Կարօն աշխատում էր մի այսպիսի նախապաշարուած ժողովրդի բարօրութեան համար...



ԻԱ.

## ՆԱԽԱԳՈՒՇԱԿՈՒԹԻՒՆ

Արեգակն սկսել էր արդէն այրել. կէս օրուայ տօթից դժուարանում էր մարդի շնչառութիւնը։ Բաժանուելով Հասօից, ես գնում էի նեղ շաւիղով, որ տանում էր դէպի փոքրիկ վտակը ձորի մէջ. այնտեղ արծաթափայլ ջրի կանաչ ափերը հովանաւորում էին մի խումբ ծառեր, որոնք տարածել էին իրանց ստուերը մետաքսի պէս փափուկ խոտերի վրայ։ Ես շտապեցի այնտեղ փոքր ինչ ազատ շունչ քաշել։ Ծառերը նուիրական էին մի փոքրիկ մատուռի, որի կիսաւեր փլատակները դեռ վայելում էին իրանց սրբազնական յարգանքը բարեպաշտ ժողովրդից։ Մատուռի մի քանի ողջ մնացած կամարները, որոնք ազատուել էին ժամանակի մաշող ձեռքից, թաղնուել էին, միմեանց հետ խիտ փաթաթուած, թուփերի եւ մացառների մէջ. իսկ նուիրական ծառերը, բարձր տարածելով իրանց ազատ ճիւղերը, գրկել էին իրանց ծոցում այն հնաւուրց սրբարանը։

Ծառերից մի քանիսի ճիւղերի վրայ փաթաթուած էին գոյնզգոյն թելեր եւ շորերի կտորտանքներ։ Տասօ վաղուց մեկնել էր ինձ այսպիսի ծառերի նշանակութիւնը. նա ասում էր՝ „երբ սուրբ ծառի ճիւղին մարդ կապում է իր հագուստից մի կտոր, իր բոլոր ցաւերը անցնում են այն ծառի վրայ„։ Իմ սիրտն էլ լի էր ցաւերով... ես էլ տանջւում էի տխուր եւ հոգեմաշ զգացմունքներով... չը թե-

Թեւացնե՞լ արդեօք այս անախորժ բեռը… Ես դուրս քաշեցի իմ արխալուղի կարուածքից մի թել եւ դողդոջուն ձեռքերով կապեցի նուիրական ծառի ճիւղին։

— Այս բաւական չէ՛, լսելի եղաւ մի ձայն։

Ես սոսկացի. տեսնում եմ՝ նոյն ծառի բունի ետեւ կծկուել է մի կին։ Սատանան իր բոլոր հրէշաւոր այլանդակութեամբ չէր կարող այնքան զարհուրելի լինել, որպէս այն մռայլոտ կերպարանքը։

— Թէ ուզում ես լաւը, Սուսանը կը տայ քեզ մի թիլիսման, այն ժամանակ ամէնը կ'երթայ ինչպէս եղն ու մեղր…

— Ա՜խ, Սուսան, դո՞ւն ես, կրկնեցի ես ուրախանալով։ — Այստեղ ի՞նչ ես շինում, ո՜րքան վախեցայ ես, Սուսան, սատ, տեսա՞ր "նրան", թէ չէ՛…

— Դուն Կարօն չես, պատասխանեց բոշան, ամենեւին չը շարժուելով իր տեղից։ — Դուն Սուսանին էլ չես կարող խաբել…

Բոշան դեռ չէր մոռացել իմ խորամանկութիւնը, որ գործ դրի նրա հետ արաբական մինարէթի մօտ. բայց ես կամենալով փոքր ինչ մեղմել իմ նրա վրայ թողած վատ տպաւորութիւնը, պատասխանեցի.

— Դու խօ գիտես, որ ես Կարօի ընկերն եմ, նրա լաւ ընկերը, Կարօն ինքն ասաց քեզ։ — Մոռացել ես, Սուսան։

— Սուսանը չէ մոռացել, նա այդ գիտէ։

Ես խիստ մերձ նստեցի խորհրդական կնոջ մօտ, որ այն նուիրական ծառերի հովանոյ տակ ինձ երեւում էր որպէս գերբնական արարածներից մէկը, որոնք միշտ կերպարանափոխ են լինում։ Եւ իրաւ, Սուսանը այսօր այն չէր, որ տեսել էի առաջին անգամ արաբական աւերակներում. նա ինձ այժմ չէր երեւում այն չոր ու ցամաք, այլանդակուած պառաւը,

որի վրայ չէր կարելի նայել առանց զարհուրանքի։ Այլ ընդհակառակն, այսօր նրա աղօտ կերպարանքի մէջ ես նշմարում էի հետքերը վաղօրոք թառամած գեղեցկութեան։ Նրա մաշուած երեսը դեռ պահպանել էր իր ազնու, համակրական արտայայտութիւնը, եւ սեւորակ աչքերը նայում էին խորին տխրութեամբ, որպէս հայելիներ, որոնց մէջ արտափայլում էին կոտրած եւ վշտահար սրտի բոլոր տանջանքները։

— Դու այն օրից յետոյ տեսե՞լ ես Կարօին, Սուսան, հարցրի ես. մտերմաբար նրա երեսին նայելով։

— Այսօր դեռ մարդիկը ճաշ չէին կերած, Սուսանը տեսաւ Կարօին։

— Բայց “Նրա„, այն աղջկայ մասին, որ ամրոցումն է... ի՞նչ խաբար տուիր Կարօին։

— Այդ մի հարցրու. Սուսանը չի ասի քեզ։

— Դու գիտես, որ Կարօն ինձանից ծածուկ ոչինչ չունի։

— Թո՛ղ նա ասէ քեզ։

Ես տեսայ, անկարելի էր այդ գաղտնիքը դուրս քաշել ծածկամիտ կնոջից, թողեցի հարցափորձը։ Նոյն ժամուն Սուսանը իր նուրբ, շագանակի կեղեւի գոյն ունեցող, շրթունքներից դուրս հնչեց մի օտարոտի ձայն, որ աւելի նման էր թռչունների ծլվլոցին, եւ իսկոյն ոչ այնքան հեռու գտնուած թուփերի միջից լսելի եղաւ նոյնպիսի ձայն։ Բայց չէր անցել, երբ այնտեղից դուրս վազեց փոքրիկ երեխայ, որ գալով Սուսանի մօտ, կպաւ նրա կուրծքին, եւ իր արեւից այրուած մերկ թեւքերով գրկելով նրա պարանոցը, սկսաւ համբուրել նրան։

Այս տեսարանը խիստ հոգեշարժ էր եւ իմ անհաւատութեան վրայ ազդեց մի դիւթական զօրութեամբ. ես

մտածում էի՝ փոքրիկ երեխան չէ՞ արդեօք այն ոգիներից մէկը, որի միջնորդութեամբ Սուսանը կատարում է իր կախարդական արարողութիւնները։ Իմ կարծիքին աւելի ուժ էր տալիս այն դիւթական հագուստը, որ խիստ սազ էր գալիս նրա վայելուչ կազմուածքին, որի իւրաքանչիւր գծերից երեւում էր վայրենի գեղեցկութիւնը իր պարզ եւ անկեղծ հրապուրանքով։ Դա նոյն երեխան էր, որ մի անգամ եւս երեւցել էր ինձ արաբական աւերակներում, երբ առաջին անգամ տեսայ Սուսանին։

Երբ նա տեսաւ ինձ, թողեց Սուսանին եւ ժպտելով վազեց իմ մօտ, կարծես, ես նրա վաղեմի ծանօթը լինէի։

— Գնի՛ր, պարոն, այս թիլիսմանը, Հիւբբին իր ձեռքովն է շինել, ասաց ինձ։

Նա կրկին ժպտեց եւ սեւ փայլուն աչքերով սկսեց նայել իմ երեսին, տալով ինձ սաթից շինած մի տափակ-քառանկիւնի բան։ Այն մի հմայեակ էր նախշած զանազան նշանագրերով, որի նմանը շատ անգամ տեսել էի կանանց պարանոցէն քարշ ընկած։ Ես տուեցի իմ մօտ գտնուած միակ արծաթի դրամը եւ գնեցի փոքրիկ կախարդից թիլիսմանը։ Նա գլուխ տուեց եւ կրկին վազեց Սուսանի մօտ։

Հիւբբի երգի՛ր մի բան պարոնի համար, նա քեզ աւելի փող տուեց, քան թէ կ'արժէր քո թիլիսմանը, ասաց նրան պառաւը։

Փոքրիկ աղջիկը, առանց քաշուելու, խիստ համարձակ կերպով եղանակեց մի թեթեւ երգ ինձ բոլորովին անհասկանալի լեզուով. միայն նրա ձայնը իր թարմ եւ քաղցր հնչիւններով բաւականին ախորժ տպաւորութիւն գործեց իմ վրայ։ Վերջացնելով իր երգը, նա կրկին վազեց իմ մօտ։

— Տո՛ւր ձեռքդ, թող Հիւբբին գուշակէ քեզ համար, ասաց նա, իմ աջը բռնելով իր փոքրիկ ձեռքերով։

Ես թոյլ տուեցի։ Նա նստեց ինձ մօտ։ Ես մինչեւ այսօր չեմ կարող մոռանալ, թէ որպիսի խորհրդական ծանրութեամբ փոքրիկ մարգարէուհին սկսեց իր գուշակութիւնները, իմ աջ ափի գծերի մէջ կարդալով իմ ճակատագիրը։ Նրա խօսքերը թէեւ անկապ էին, որպէս քրմուհու առեղծուածներ, բայց զուրկ չէին իմաստից. ես կարող եմ կազմակերպել այսպէս.

“Քո կեանքի ճանապարհը փուշերով է ծածկուած. ամէն մի քայլում դրած են քո առջեւ որոգայթներ. դու կ'ընկնես նրանց մէջ, դարձեալ դուրս կը գաս, միշտ քաջութեամբ յաղթելով բոլոր դժուարութիւններին։ Այդ կռիւը քո կեանքի մէջ կը տեւէ երկար, մինչեւ քո գլխի սեւ մազերը ճերմակ գոյն կը ստանան. այն ժամանակ կը զարկէ քեզ համար խաղաղութեան ժամը, եւ քո բախտի արեւը, որ այժմ ծածկուած է սեւ ամպերով, կրկին կը ծագէ իր բոլոր պայծառութեամբ„։

Նա կանգ առեց եւ րոպէական լռութիւնից յետոյ շարունակեց. “դու սիրում ես երկուսին, երկուսն էլ գեղեցիկ են, որպէս դրախտի անմահ աղջիկներ. նրանք խիստ տաք սրտով կապուած են քեզ 'հետ. բայց նրանցից եւ ոչ մէկը„...

— Բաւակա՛ն է, կտրեցի ես նրա խօսքը. — գիտեմ ինչ պէտք է ասես...

Նա տխուր կերպով նայեց իմ երեսին եւ թողեց ձեռքս, երեւի վիրաւորուեցաւ, որ ես արհամարհեցի նրա արհեստը, ասելով.

— Հիւրբի, դու խօ ամենի համար այսպէս ես գուշակում։

Նա բաւականին հպարտ անձնասիրութեամբ պատասխանեց.

— Հիւբբին սուտ չի ասի. Հիւբբին խօսում է այն, ինչ յայտնում է նրան "գերագոյն ոգին"։

Մեր խօսակցութիւնը բոլոր ժամանակ, թէ Սուսանի եւ թէ մանուկ գուշակողի հետ պարսկերէն էր։ Բայց նրանց կանոնաւոր արտասանութիւնից երեւում էր, որ նրանք չէին պատկանում բոշաների այն ցեղերին, որոնց շատ անգամ հանդիպել էի ես Պարսկաստանում։ Նրանց երեսների թէ գծագրութեան նրբութիւնը, թէ կաշու գոյնը, որ աւելի սեւ չէր, թէ բնաւորութեան մեղմութիւնը, որ զուրկ չէր նոյն ցեղին յատուկ կրքոտ աշխուժութիւնից, — բոլորը ցոյց էին տալիս նրանց բոշաների մի աւելի ազնիւ եւ առանձին ցեղին պատկանելը։ Բայց ինձ զարմացնում էր փոքրիկ աղջիկը։ Սուսանը նրա մայրը լինելու համար բաւականին հասակաւոր էր. ուրեմն ո՞վ պէտք է լինէր նա։ Ես հարցրի պառաւից. մինչեւ նա իր բերանը բացելը, Հիւբբին պատասխանեց զարմանալի արագախօսութեամբ.

— Հիւբբին Սուսանի թոռն է, Հիւբբին անբախտ աղջիկ է. նրա մայրը կորած է. Հիւբբին պտռում է իր մայրը. եւ նրա հայրը...

Պառաւը չը թողեց նրան վերջացնել իր խօսքը եւ ինձ անծանօթ մի լեզուով սաստիկ բարկացաւ նրա վրայ. խեղճ աղջիկը իսկոյն սուս կացաւ։ Ես չը հասկացայ թէ ինչ ասաց Սուսանը, միայն նրա խօսքերից որոշեցի պարսկերէնին շատ մօտ բառը "լաէ"։

Երեւում էր, Հիւբբիի անզգուշութիւնը սաստիկ խռովութիւն պատճառեց պառաւի մէջ. նա վեր կացաւ, եւ նոյն լեզուով մրմրթաց աղջկան մի քանի խօսքեր. երկուսը միասին ճանապարհ ընկան։ Սուսանը ամենեւին չը նայեց ինձ եւ ոչինչ չասաց, միայն Հիւբբին մի քանի քայլ հեռանալով կրկին դարձաւ, եւ փայլուն աչքերը իմ երեսին ձգե-

լով, ժպտաց եւ գլուխը թափտալով, շարունակեց իր թե-թեւ քայլերը խորհրդական պառաւի հետ։ Քանի րոպէից յետոյ նրանք աներեւոյթացան մերձակայ լեռների մէջ։

«Հիւրքին անբախտ աղջիկ է... Նրա մայրը կորած է... Հիւրքին պտռում է իր մօրը, եւ նրա հայրը»... Ո՞վ էր նրա հայրը, — այդ խօսքը խորամանկ պառաւը չը թողեց գեղեցիկ երեխային վերջացնել։ Երեւի, մի աղօտ գաղտնիքով վարագուրուած էր փոքրիկ գուշակողի ծագումը, որը նա ան-զգուշութեամբ պէտք է երեւան հանէր. եթէ ոչ, ի՞նչու պէտք է Սուսանը այնպէս վրդովուէր, ի՞նչու իսկոյն պէտք է հեռանար ինձանից։ Նա վախեցաւ՝ չլիցէ թէ երեխան մի նոր անզգուշ խօսք դուրս թողնէ իր բերնից, եւ հեռացրեց նրան։ Անպատճառ այստեղ մի գաղտնիք կար, որ պէտք էր գիտենալ, բայց ո՞րպէս գիտենալ։ Խորամանկ պառաւը գնաց, կորաւ անյայտ ուրուականի պէս։ Ո՞րտեղ կարելի էր տեսնել նրան միւսանգամ։ Բայց ի՞նչ է նշանակում նրա ստէպ տե-սակցութիւնները Կարօի հետ։ Կարօն ի՞նչ գործ ունի այն մոլորշրջիկ թափառականի հետ. եւ նրանց յարաբերութիւն-ների հետ կապ ունի մի երրորդ անձնաւորութիւն՝ — «ամ-րոցի աղջիկը» — ահա գաղտնիքի գլխաւոր մասը, որ ծած-կուած էր խաւարի մէջ...

Բայց իմ մտքից չէր դուրս գալիս փոքրիկ գուշակողի պատկերը, ես առաջին անգամ տեսնում էի այնպիսի սի-րուն երեխայ, որի մէջ կար այնքան համարձակ անմեղու-թիւն, որի սիրտը այնքան տաք եւ զգայուն էր։ Ես հա-ւատում էի նրա խօսքերին, որոնցմով նա կարդաց իմ ան-բախտ ապագան. ես հաւատում էի, որովհետեւ «գերագոյն ոգին» այնպիսի անկեղծ արարածներին միայն կը յայտնէ մարդկանց ճակատագրի գաղտնիքները։ Ահա, ասում էի ես, հաւատարիմ դստերք բնութեան, որոնք ապրում են երկնքի

*թռչունների նման. “ոչ վարում են, ոչ ցանում են եւ ոչ հնձում են„, բայց նրանք էլ աղքատ են եւ ապրում են եւ ապրում են ողորմութիւնով ...*

*Կրկին տիրեցին ինձ սեւ մտածութիւնները, կրկին իմ սիրտը ընկաւ անհանգիստ խռովութեան մէջ: Ես պառկած էի սրբազան ծառերի հովանու ներքոյ, բայց չուշացաւ քունը, նա վերջ տուեց իմ անհանգստութեանը:*



## ԻԲ.

## ՆԱԽԱԶԳՈՒՇՈՒԹԻՒՆ

*Երբ զարթեցայ, գիշեր էր։ Ո՞րքան ժամանակ անցել էր օրից, քանի՞ ժամ քնել էի, ես չը կարողացայ գիտենալ։ Փափուկ եւ տաք գիշեր էր։ Ո՜րքան գեղեցիկ վառվում էր ամառնային երկինքը իր փայլուն գոհարներով. ո՜րքան մեղմ եւ մտախոհ կերպով սահում էր կիսալուսինը պարզ եթերքի միջով։*

*Ես պառկած էի դալար խոտերի վրայ, եւ խիստ ախորժ ծուլութեամբ թաւալվում էի մի կողքից դէպի միւսը։ Ականջ էի դնում։ Ամէն տեղ տիրում էր խորին լռութիւն, բոլորը հանգստանում էին։ Արթուն էր միայն վտակը, որի ափի մօտ պառկած էի. ես լսում էի նրա խուլ-մելամաղձական խոխոջմունքը, նա անդադար վազում էր եւ վազում, նա քուն եւ հանգստութիւն չունէր։ Ահա, հովասուն զեփիւռը փափուկ թեւքը քսեց իմ երեսին, եւ շուացնելով անցաւ. կարծես, ուզում էր ասել “տես, ես էլ արթուն եմ„։*

*Աչքս դարձրի դէպի աստղազարդ երկինքը։ Նայում եմ։ Այո՛, գեղեցի՜կ են Աստուծոյ լուսաւորները։ Որոնում եմ նրանց մէջ իմ աստղը, երկա՜ր որոնում եմ, բայց չեմ գտնում։ Ահա երկու աստղեր. նրանք ծանօթ են ինձ. ես շատ անգամ տեսել եմ նրանց, համբուրել եմ... շատ անգամ նրանք նայել են ինձ վրայ ջերմ քնքշութեամբ... Ես ճանաչում եմ ձեզ, սիրուն աստղեր, դուք նմանում էք*

Սօնայի տխուր եւ արտասուալի աչքերին, որպէս այն վերջին գիշերը, երբ նա բաց արաւ իմ բանտի դուռը եւ ասաց՝ “փախիր, Փարհատ„: Ահա՛, երկու աստղեր եւս. ինչպէս հպարտ եւ ինքնահաւան կերպով փայլում են նրանք. նմանում են նրանք Մարօի լի կրակով աչքերին, երբ նա հրացանը ձեռին կանգնած, ժպտում էր այն սարսափելի րոպէում. երբ ես շաղախուած էի ղաբանի արիւնով։

Սիրում եմ ձեզ գեղեցիկ աստղեր։ Ահա՛ անցաւ մի սեւ ամպ եւ ծածկեց իմ տեսութիւնից նազելի աչկները...

— Ա՜խ, Սօնա... ա՜խ, Մարօ...

— Ի՞նչ է, լսելի եղաւ մի ձայն եւ իմ առջեւ նկարուեցաւ մի պատկեր, որպէս կերպարանքը գիշերային ուրուականի։

Մի սարսուռ վազեց բոլոր մարմինիս մէջ։

— Ես եմ, Փարհատ։

— Ա՜խ, Մարօ...

Երեւակայեցէք իմ ուրախութիւնը, ուրախութիւնը լի վառուած կրքերով մի պատանիի, որ գիշերային լռութեան մէջ, հեռու մարդկային բնակութիւնից, գտնում է նրան, որին սիրում է։

Մարօն նստեց իմ մօտ, իմ ձեռքը առեց իր երկու ափերի մէջ, եւ դրեց իր ծնկի վրայ։ Նա ուրախ, որպէս միշտ, սկսեց պատմել՝ թէ առաւօտեան իր հօրից իմացաւ, որ իմ առողջութիւնը վատ էր. նա վազեց դէպի եղբօր ագարակը, տեսաւ, ես այնտեղ չը կայի։ Այնտեղից շտապեց դէպի արտը Հասօի մօտ. եղբօրից այսքանը իմացաւ, թէ նա տեսել էր ինձ կէսօրից առաջ, բայց չը գիտէր՝ ո՛ւր կամ ո՛ր կողմը գնացի։ Նա երկար որոնեց ինձ, մինչեւ արեւը մտաւ եւ օրը մթնեց. յետոյ նրան հանդիպեց մի բօշայ կին, որն ասաց, թէ տեսել էր ինձ “քանդուած մատուռի մօտ„։

— Դու ճանաչում ե՞ս այն կնկան, հարցրի ես։

— Երկրորդ անգամն է, որ տեսնում եմ նրան պատասխանեց Մարօն։

— Առաջին անգամն երբ էր։

— Երկու տարի առաջ։ Ես տեսայ նրան միեւնոյն հագուստով, որպէս այսօր, էլի այն փոքրիկ երեխան իր հետն էր, որին այսօր տեսայ։ Ի՜նչ լաւ երեխայ է, Փարհատ, այնքան սիրտս սիրեց նրան, որ բռնեցի երեսը պաչ արի։ Ախար մե՞ղք է անօրէնի երեսը պաչ անելը. Նրա ճակատին մեռոն չէ քսած. բայց ես նրան պաչ արի. Նա այնպէս լաւ երեխայ էր։

— Որտեղ դու տեսար նրան երկու տարի առաջ։

Մարօն նկատելով, իր պատմութիւնը հետաքրքրում էր ինձ, շարունակեց.

— Ես տեսայ նրան այս ձորի մէջ, այս մատուռի մօտ. Նա խօսում էր Կարօի հետ, ի՞նչ էր խօսում, ես չիմացայ, նրա համար որ, նրանց լեզուն չէի հասկանում։ Քանի օրից յետոյ Կարօն անյայտացաւ մեր տանից. մենք չիմացանք թէ ուր գնաց։ Քանի տարի էր նրանից ոչինչ լուր չունէինք։ Կարօի գնալուց յետոյ, այն կինն էլ չերեւաց։ Այս անգամին, երբ Կարօն կրկին լուս ընկաւ, Բօշան էլի ման է գալիս մեր կողմերում։

— Այն ժամանակ Ասլանը եւ Սագօն Կարօի հետ է՞ին։

— Չէ՛, նրանք չը կային։ Այս անգամ յետ դարձան միասին։ Երկու շաբաթ է, ինչոր եկել են։

— Դու այսօր Կարօին չե՞ս տեսել։

— Ես քեզ ասեցի, որ տանից դուրս եմ եկել առաւօտեան, մինչեւ հիմա էլ սար, ձոր չեմ թողել, քո ետնէն ման եմ եկել։ Հիմայ ի՞նչպէս է քէփդ, դու ողջ օրը հաց չես կերել. ի՞նչ գիժ տղայ ես, Փարհատ։

— Կարօն լաւ տղայ է, այնպէս չէ՞։

— Լաւ տղայ է, բայց . . .

Նա կտրեց իր խօսքը, եւ րոպէական լռութիւնից յետոյ շարունակեց.

— Գիտե՞ս, Փարհատ, քանի օրից յետոյ Կարօն իր ընկերների հետ գնալու են մի տեղ, դու նրանց հետ չը գնաս։

— Ինչու չը պէտք է գնամ։

— Այնպէս . . . մի՛ գնա . . . ես չեմ կարող ասել . . . հայրս ինձ կը սպանէ թէ ասեմ . . . Աղաչում եմ, Փարհատ, մի՛ գնա նրանց հետ։

Այդ խօսքերի միջոցին բարեսիրտ օրիորդի աչքերը լցուեցան արտասուքով. նա պինդ կպած իմ կուրծքին, գրկել էր ինձ, երկար եւ երկար աղաչում էր, որ ես չը մասնակցեմ Կարօի եւ նրա ընկերների արշաւանքին։ Բայց ի՛նչ արշաւանք էր այդ, դէպի ո՞ր կողմը եւ ի՛նչ նպատակով, — դրանց մասին ծածկամիտ Մարօն ոչինչ չը յայտնեց։

— Ախ, Կարօն . . . նա սիրտ չունի . . . նա գազա՛ն է, մարդ չէ . . . նրա համար մի ադամորդու սպանելը այնպէս է, ինչպէս խեղճ հաւի վիզը կտրելը . . . Ես սուտ չեմ ասում, Փարհատ, ես իմ աչքով եմ տեսել . . . Ախ, հեռու կաց այս մարդից, Փարհատ, չը բարկացնես նրան . . . նա Աստուած չունի . . . Նա բարեկամ, ընկեր, — այս բաները չէ խմանում . . .

Այսպէս խօսում էր Մարօն արտասուախառն հեկեկանքով, բայց ինձ բոլորովին անհաւատալի էր երեւում, մտածել Կարօի մէջ մի այնպիսի վայրենութիւն, որպէս նկարագրեց նրան Մարօն։ Մի այնպիսի տղամարդ, որ բոլոր սրտով նուիրել էր իրան մարդասիրութեան գործին, չէր կարող գազան լինել։ Ես Կարօին լաւ էի ճանաչում, ճանաչում էի նրան երեխայութիւնից, բայց մինթէ փոխուել էր նա։

— Ես չեմ հաւատում, Մարօ, Կարօն այդպէս չէ, կտրեցի ես օրիորդի խօսքը։ — Ես նրանից չեմ բաժանուի, ուր որ գնայ, ես էլ կը գնամ նրա հետ։

Մարօն յայտնեց, թէ ո՛րպէս նա մի գիշեր սպաննեց իր ամենալաւ ընկերներից մէկին, մի հնդկացի հայ երիտասարդի, որի վրայ փոքր ինչ կասկած ունէր, թէ կը յայտնէ իր գաղտնիքը. եւ աւելացրուց, թէ կարող էր մինչեւ անգամ նրա գիւղը ցոյց տալ ինձ, որովհետեւ այս անցքը պատահել էր մի քանի օր առաջ։ Միայն ինքը, Մարօն, չէր կարող ամեն ինչ համարձակ ասել ինձ, որովհետեւ վախում էր իր հօրից։

— Ես միշտ հաւատարիմ կը մնամ Կարօին, եւ դաւաճանութիւն չեմ գործի նրա դէմ, ասեցի ես։

Հա՛, սիրելիս, նրա հետ պէտք է այսպէս լինել, պատասխանեց Մարօն, փոքր ինչ հանգստանալով։ — Ես չեմ ասում նա վատ տղայ է. նա վատ է միայն վատերի հետ, ով որ նրան հակառակ է։ Բայց նրա քարէ սիրտը յանկարծ փափկանում է, երբ մի խեղճ մարդ է տեսնում. քանի՜ անգամ ես տեսել եմ նրան, որ մտել է աղքատ գիւղացիների խրճիթը եւ նրանց փող է բաշխել, նա իր բերանի պատառը ուրիշին է տալիս, երբ տեսնում է, որ նա քաղցած է։

— Բայց Ասլանը եւ Սագօն ի՞նչպէս են։

— Ասլանը լաւ տղայ է, բայց Սագօին չեմ սիրում, նա լաւ տղայ չէ։ Գիտե՞ս, Փարհատ, մի օր նա ի՞նչ ասաց ինձ. մեր բակումը նրա հետ մենակ կանգնած էինք. խօսում էինք մեր գիւղի աղջիկների վրայ. մէկ էլ տեսնեմ, այն աղուէսը — ախար նրա երեսը աղուէսի նման է, — հա՛, Սագօն ձեռքը գցեց իմ վզովն ու ասաց. "Թո՛ղ, Մարօ պաչ անեմ քեզ"։ Ես յետ քաշուեցայ, մի լաւ

ապտակ՝ շըրըխկ նրա երեսին, քիչ էր մնացել խեղճի չիլ աչքերը քոռանային։

— Իսկ եթէ ես ասեմ՝ ինձ մի պաչ տուր, ինձ էլ ապտակ կը տաս։

Նա սկսեց ծիծաղել եւ ոչինչ չը պատասխանեց։

Ես գլուխս խոնարհեցրի նրա կուրծքի վրայ, երկար մեր շրթունքները չէին հեռանում միմեանցից։ Մենք ոչինչ չուխտեցինք մէկ մէկու հետ. մենք չը խոստացանք միմեանց մշտական սէր, հաւատարմութիւն. — այսպիսի բացատրութիւններ չեղան մեր մէջ։ Միայն սրտի խուլ լեզուն խոստացաւ շատ եւ շատ, այն որ ամենասրբազանն է եւ աստուածային, այն որ միայն սիրտը կարող է հասկանալ։

— Գնանք, ձայն տուեց օրիորդը, որպէս թէ զարթնելով խորին հոգեզմայլութիւնից։

— Գիշերի ո՞ր ժամանակն է, հարցրի ես։

Նա նայեց դէպի երկինքը եւ պատասխանեց.

— Տես, "բազումքը„ երբ այն աստղի մօտ է հասնում, գիշերը կէս է լինում։ — Ուղիղ կէս գիշեր է։ Մենք վեր կացանք։

Մենք գնում էինք զանազան ոլոր-մոլոր ճանապարհներով. թէ ինչպէս էի անցել ես այդ լաբիրինթոսը ամենեւին չէի յիշում։ Ի՞նչ կը լինէր իմ վախճանը, մտածում էի ես, եթէ Մարօն ինձ չը գտնէր. ես ոչ միայն գիշերով, այլ լոյս ցերեկով եւս չէի կարող գտնել Հասօի ագարակը։

Մարօն կպած էր իմ կողքին եւ մանկահասակ աղջկայ գալար եւ թեքուն հասակի ամեն մի շարժմունքը ելեքտրապէս ազդում էր իմ վրայ։ Բոլոր ժամանակը նա առանց լռելու խօսում էր, թռչելով մէկ մտքից դէպի միւսը. երբեմն նա ասում էր՝ թէ որքան լաւ կը լինէր, եթէ ինձ չը

գտնէր, թէ նա բոլոր գիշերը կը պտուէր ինձ, միշտ կը պտուէր։ Յայտնում էր՝ թէ իմ պառկած տեղը շատ վատ տեղ է, եւ նա ուրախ է, որ վտանգ չէ պատահել ինձ. ասում էր՝ թէ այն ձորը կոչվում է ղանլի-ղարա (արիւնոտ ձոր), որովհետեւ քիչ չէ պատահում, այնտեղ գտնում են սպաննուած մարդերի դիակներ։ Բացի դրանից, աւելացնում էր նա, այնտեղ գազանները շատ անգամ պատառոտում են մարդկանց, երբ նրանք պաշտպանուելու զէնք չունէին իրանց հետ։ Յանդիմանում էր իմ անհոգութիւնը, թէ ինչու ես զէնք չէի կրում, թէ գոնեա պէտք էր ունենալ իր մօտ մի ջուխտ ատրճանակ եւ խէնջար։

— Ապա դու ինչպէս առանց զէնքի չը վախեցար այն ձորը մտնել, հարցրի ես։

Միթէ գիշերն առանց զէնքի մա՞ն են գալիս, պատասխանեց նա ծիծաղելով իմ պարզմտութեան վրայ, եւ ցոյց տուեց մի ջուխտ ատրճանակներ, որ թագցրած ունէր իր գօտիի մէջ։

Եթէ ցերեկ լինէր, Մարօն կը նկատէր, թէ ո՜րպէս կարմրեցայ ես ամօթից . . .



ԻԳ.

## ՆԵՐՔԻՆ ԿՌԻՒ

*Հասնելով Ծերունի որսորդի տունը, մենք գտանք բոլորին քնած: Մըհէն, որ բաց արեց դուռը, յայտնեց՝ թէ իր աղան տանը չէր եւ ոչ նրա հիւրերը դարձել էին իրանց "գնացած տեղից": Ես մտածեցի, անպատճառ մէկ արգելք պէտք է պատահած լինի, որովհետեւ Կարօն եւ նրա ընկերները խոստացան, թէ մինչեւ երեկոյ կը վերադառնան: Հասօն իր ագարակումն էր. նա տան երես չէր տեսնում, քանի իր մշակութեան գործերը վերջացած չէին դաշտերից. ձմեռուայ ձիւները միայն մի քանի ամիս նրան քշում էին դէպի տուն:*

*Մարօի առաջին հոգսը եղաւ պատրաստել ինձ համար մի բան ուտելու: Ընթրիքից յետոյ նա գցեց իմ քնելու շորերը, եւ ցանկանալով ինձ բարի գիշեր, ինքն եւս գնաց հանգստանալու:*

*Առաւօտեան ես զարթեցայ խիստ ուշ. երկար քունը բաւականին կազդուրել էր իմ առողջութիւնը. ես զգում էի ինձ զուարթ եւ նորոգուած ուժերով: Սիրտս էլ սովորականից աւելի ուրախ եւ հանգիստ էր, որպէս թէ, ես գտնվում էի մի անսահման բաւականութեան մէջ, լոյս աշխարհում ոչինչ պակաս չէր մնացել ինձ, բոլո՛րը, բոլո՛րը լցրել էր այն արարածը, որին սիրում էի ես, որը սիրում էր ինձ:*

«Գեղեցիկ Մարօն կը բժշկէ քեզ»... ասաց Սաքօն. նրա խօսքը ճշմարիտ էր, թէեւ նա արտասանեց այնպիսի դառն, հեգնական ժպիտով։

Ես կրկին գլուխս դրեցի բարձի վրայ եւ նայում էի պատուհանից ներս ծագած շողին, որի մէջ խաղում էին միլիոնաւոր մանրիկ փոշիներ գոյնզգոյն փայլումներով։ Ահա ինչ է նշանակում լոյսը, մտածում էի ես, չէ՞ որ այս սենեակի ամբողջ բովանդակութիւնը պարունակում է իր մէջ այսպիսի փոշիների մի ծովակ, բայց նրանք չեն երեւում օդի աղօտութեան մէջ, իսկ լոյսի այս նեղ ժապաւէնի մէջ բոլորը երեւում են։ Բայց եթէ խաւար լինէր, — ես ոչինչ չէի տեսնելու, մինչեւ անգամ ամենախոշոր առարկաները։ Ա՜խ, ինչ լաւ բան է լոյսը, որպէս բաց է անում նա մարդի աչքերը եւ զօրութիւն է տալիս նրա տեսութեանը։ Չէ՞ որ մի եւ նոյն է լինում եւ կեանքի մէջ, — մի ժողովրդի, մի ազգի եւ ամբողջ աշխարհի կեանքի մէջ։ Երբ որ տիրում է մտաւոր խաւարը, մարդիկ չեն տեսնում իրանց ամենախոշոր թերութիւնները. նրանք չեն նշմարում այն ճանապարհի ուղղութիւնը կամ ծռութիւնը, որով գնում են. նրանք չեն նկատում այն խոչնդոտները, որ ամեն անգամ նրանց ոտքին է դիպչում եւ ճակատի վրայ վայր է գցում. — նրանք ոչինչ չեն տեսնում, միայն խարխափում են մոլորութեան մէջ...

Ցիշեալ մտախոհութիւնները ինձ հասցնում էին այն եզրակացութեանը, թէ բոլորովին անյաջող կ'անցնէր Կարօի ձեռնարկութիւնը. նա չէր կարող մի ժողովուրդ, որ ապրում էր խաւար մթնոլորտի մէջ, կանգնեցնել շիտակ ճանապարհի վրայ եւ նրա ընթացքին անմոլոր ուղղութիւն տալ։ Պէտք էր նախ եւ առաջ փարատել խաւարը, եւ ժողովուրդն ինքն իրան կը գտնէր իր ճանապարհը...

Արդեօք այսպէ՞ս էի մտածում ես. միթէ այս ճշմար-
տութիւններն էի կարդում արեւի այն լուսաւոր ժապաւէնի
մէջ, որ ներս էր շողացել իմ քնարանի պատուհանից: —
Ո՛չ, ես ոչինչ չէի տեսնում նրա մէջ բացի փոքրիկ փոշինե-
րից. նրանք եւս շուտով ձանձրացրին ինձ: Երեսս շուռ տուի,
իմ ուշադրութիւնը գրաւեց ախտաբորբոք ճնճղուկը, որ իր
զոյգի հետ պատուհանից ներս թռան սենեակի մէջ: Նրանք
մի քանի շրջաններ գծեցին իմ դատարկ քնարանում, յետոյ
նստեցին միմեանց մօտ սկսեցին քաղցր սիրախօսութիւններ
անել: Մինչ այն զուարճութեան մէջ էին, ներս թռաւ մի
այլ ճնճղուկ — արու, նա մօտեցաւ նախկին հերոսի սիրու-
հուն. նորեկի կողմից մի այսպիսի լրբութիւնը շարժեց սիրա-
հարի նախանձը: Կռիւը սկսուեց: Մի փոքր խեղդեցին մէկմէ-
կու, մի փոքր քաշեցին միմեանց փետուրները: Մինչ նրանք
այս պատերազմի մէջ էին, էգը օգուտ քաղեց խռովու-
թիւնից եւ դուրս փախաւ: Կռուողները թողեցին մենամար-
տութիւնը, վազեցին իրանց երկպառակութեան առարկայի
ետեւից:

Միթէ մի եւ նոյնը չը պատահեց իմ եւ Սաքօի մէջ:
Չէ, մտածում էի ես, նրա փոքրիկ գլուխը կը ջարդեմ, եթէ
միւսանգամ նա կը համարձակուի Մարօի անունը յիշել. ես
աւելի թոյլ չը պէտք է լինեմ, քան այն ճնճղուկը, որ իր
կեանքով պաշտպանում էր սիրոյ գաղափարը:

Նոյն րոպէին, կարծես, ես լսում էի մի հեկեկանք,
կարծես, մի դառն լացելու ձայն զարկւում էր իմ ականջնե-
րին: Ինձ թւում էր, թէ ես դպրոցումն էի, տէր Թօդիկը
չոքեցրել էր ինձ մանրած աղիւսի կտորտանքի վրայ. ես տես-
նում էի Սօնային (դասատան պատուհանից երեւում էր
նա) մի եւ նոյն ծառի ստուերի ներքոյ, ուր միշտ նստում էր,
եւ այժմ նստած էր: Նա գլուխը քաշ էր գցել իր ծնկների

